# ՈՂԲ ԵԴԵՍԻԱՅ

## ԱՍԱՑԵԱԼ ՍՐԲՈՅ ՏԵԱՌՆ ՆԵՐՍԷՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ։

Զառաջինն 'ի լոյս ընծայեալ գործա-
դրութեամբ Տ՟ն Յովհաննու Վ՟րդպտի
Զօհրապեան՝ կոստանդնուպօլսեցւոյ։

Յասիական ընկերութենէն փարիզու։



1827 — ՌՄՀԶ·

'Ի ՓԱՐԻԶ.

'Ի Գործարանի Տօնտէի Տիւբրէ։

Les ouvrages de Nersès Klaïetsi ont conservé jusqu'à nos jours une très-haute célébrité chez les Arméniens, qui en ont donné un grand nombre d'éditions. Le poème élégiaque sur la prise d'Édesse est le seul qui soit resté inédit. Ce n'est pas qu'il soit moins digne d'estime que les autres compositions de Nersès, il est peut-être au contraire plus estimé, plus recherché; il se distingue, sans aucun doute, par plus de verve et d'énergie. Il était bien difficile qu'un chrétien, chef spirituel d'une des nations de l'Orient le plus attachées à la religion chrétienne, déplorant les infortunes et les catastrophes d'une des plus puissantes villes chrétiennes de l'Asie, conquise de vive force par les infidèles, ne joignît pas à ses lamentations quelques invectives contre les Musulmans. On trouve dans ce poème plusieurs morceaux de ce genre. Les imprécations de Nersès contre Mahomet, contre sa loi et ses sectateurs, sont si véhémentes, si énergiques, que les Arméniens ont craint de s'exposer aux persécutions des Turks, en reproduisant ce poème par la voie de l'impression. Ce motif le fait d'autant plus rechercher; les copies en sont très-nombreuses, très-répandues, mais aussi très-fautives. M. le docteur Zohrab, premier éditeur de cet ouvrage, a conféré le texte qu'il livre aujourd'hui à l'impression sous les auspices de la Société Asia-

# ՆԱԽԱԲԱՆ ԾԱՆՈՒՑՈՒՄՆ ։

Ողբերգական քերդողութիւնս առմանն Եդեսեայ քաղաքի՝ յօտանաւոր գրուածս մեծ հայրապետին մերոյ Ներսէսի շնորհալւոյ՝ քան ծանուցեալ կատարելագործն, (ուր և այսմ նոյնահանգ արուեստի հեղինակ 'ի հայկականս դպրութեան՝ զնա ինքն ունիմք ճանաչել անշուշտ.*) չէ ինչ երկբայելի՝ եթէ 'ի սակս կասկածանաց վտանգի ըստ դրից ընկալութեան մերազնեայց, մինչև ցարդ՝ տարաբախտութեամբ իմն ասեմ անհամարձակելի եղև՝ ընդ այլ և այլ քերդողական գրութիւնս նորին և զսա 'ի տպագրութիւն արձանացուցանել. խնամով իմն 'ի ձեռագիր օրինակաց յօրինակս և եթ յածեալ առ ուսում-

* Լամբր. 'ի ներբ. Շնորհ ։

Հոմերականն՝ տաղից չափող,
ոտանաւորն՝ տառից գրող ։ . . .
Վասն ուռհայոյ՝ ողբս հաստատէր,
զաղէտն 'ի մի՝ գործ աւարտէր ։

նասէրս ։ Օ՛ր ապաքէն տեսանեմք մերում ժամանակի և տեղւոյ պահեալ՝ ՚ի դէպ այնմ համարձակագոյնս ձեռնամուխ լինելոյ ՚ի բարեհամբոյր կենցաղօգուտն վարժութիւն բանասիրաց . յաջողելով զառաջինն արդեամբք Ասիական ընկերութեան քաղաքիս փարիզու ՚ի լոյս ելանել ։ Ուր և բազմարդիւն յօրինիչ գործոյս առ նոյն նպատակ ասէ բերեալ ՚ի սոյն՝ ՚ի ժտելոյ ուրեմն իշխանազուն եղբօրորդւոյ իւրոյ Ապիրատի՝ անդստին ՚ի մանկական տիոցն ՚ի զինուորական մարզս հրահանգելոյ. այն՝ որոյ ՚ի խնդրոյ իմանամք արարեալ և զերկրորդ մասն Յս̃որդի գրոցն ։

Արդ ՚ի սմին յայսմ՝ բանաստեղծօրէն ՚ի ձև բարառնութեան յինքն յեղանակեալ ըդդէմս վշտակիր քաղաքին եդեսիայ՝ ՚ի նախերգանսն անդ յիւրն ողբակցութիւն հրաւիրէ զչորեքծագեան տիեզերս, և յանուանէ առ հրնգեսին բազմահռչակ ՚ի նախնումն մայրաքաղաքսն ուղղէ զբանս, անդ՝ ուր ըստ եկեղեցականին հաստատեալ եղեն աթոռք քահանայապետութեանց ։ Եւ անտի առ հայաստանեայս շրջեալ զոճ բանիցն ՚ի Վաղարշապատն և յԱնի մայրաքաղաքս՝ ընդ մերս ար-

շակունեաց և բագրատունեաց թագաւորու_
թեամբք. յանդիման առնէ զնոցուն նախնի
ծաղկաւէտ բարգաւաճութեանն բաստս, և
զվերջինն իւրանման բաժակ դառնահամ ՚ի
նմին ձեռանէ արբեալ ։ Եւ այնուհետև ըս_
կիզբն առնէ ՚ի համար ածել ցայն վայր զէւրն
բարերջանիկ վիճակ յոր վայելեալն յօրանայր·
ըստ արտաքին դրիցն կայանաց՝ բազմեալ
ասէ ՚ի մէջ երկուց մեծամեծ գետոցն տիգրիսի
և եփրատայ, արքայարան հաստատեալ եր_
բեմն՝ հայոց և ասորւոց թագաւորին Աբգա_
րոսի · և յեւթանասուն աւանից շուրջ պար
առեալ զօրէն թիկնապահաց թագաւորու_
թեան. ՚ի պարարտութեան երկրի յազգի ազ_
գի արդիւնս բերմանց բուսոց զուարճացեալ ։
Ուր և յիշէ զանուանին զայն պակնն ինքնա_
բուղխ կենդանի ջրոց ծովածաւալ՝ զուար_
ճալի աւազան ձեւացեալ ՚ի քաղաքամիջի
անդ. և պատրաստեալ ՚ի մաքրութիւն հրա_
պարակաց, և յանսպառ ոռոգումն բուրաս_
տանաց · հանդերձայլ և բարեշուք հանդա_
մանօք վայելչութեանցն ըստ կարգի ։

Այլ ընդ այսանակ շքեղազարդ յօրի_
նուածս նորուն ասէ՝ ընդաբոյս մախանօքն բե_

րեալ անպականարար ոսոխին, և սպասեալ ժամուն Թերութեան յիւրական ուժոյն կարողութենէ՝ յեղակարծումն պահու յարձակի 'ի վերայ նորա. և պատնէշ պաշարմամբ իբր ամսօրեայ ժամանակ 'ի նեղ արկանէ զքաջամարտիկ ընդդիմակալսն 'ի ներքուստ՝ անօգնականս յարտաքուստն ձեռն տալոյ. մինչև ուրուրեմն մուտ գործեալ 'ի միոյ կուսէ պարսպին յախուռն զօրօք 'ի ներքս յարձակի: Ուր 'ի նկարագրել զաղէտ անհնարին կոտորածի երկոցունց կողմանց՝ 'ի մէջ բերէ և զառաքինութիւն չորից քրիստոնէական դաւանութեանցն հօտապետից՝ հռոմայեցւոց և հայոց, յունաց և ասորւոց, որ և նոքին 'ի գլուխ իւրաքանչիւր հօտիցն ոչ զանգիտեցին ոխերիմ թշնամւոյն հաւատոյ ախոյեան ելանել: Այլ 'ի խուռն բազմութենէ բարբարոսին 'ի պարտութիւն մատնեալ քա՟ղաւան աղանդյն, պատմէ այնուհետև մի ըստ միոջէ զգազանաւա եղեռնագործութիւնսն վայրենազունիցն այնոցիկ՝ զոր ըստ իւրեանց սովորականին 'ի վերայ ածէին, և սնապարծութեամբ զա՛յն յաղթանակ՝ բուռն ուժոյ բազկի՛ իւրեանց գրէին՝ 'ի ներգործութենէ չարագլուխ աղանդապետին

զօրացեալ: Օրս հեգնելով բանաստեղծն՝ ՚ի նմանութիւն նկուն և զազիր կենդանեաց, խորհրդածէ սովորութիւն գոլ նախախնամողին ամենայնի զիւրն ընտիր արարածս այսպիսեաւքս փորձ կացուցանել. և հուսկ ուրեմն զանօթ պատուհասին չարաչար կատարածիւ ՚ի կորուստ մատնել: Ուր և զվարկ աղէտիցն՝ նոցին ՚ի վերայ հասանելոց՝ պէսպէս եղանակաւ այլաբանեալ, զելսն այնր արժանահաւ դատաստանի՝ պուետական իմն առասութեամբ կանխաձայնէ հատուցանել ՚ի ձեռն նորին իսկ ֆռանկ ազգի, այն որ այժմ անուանին ֆռանցուզք. որ յառաջադէմն էին ՚ի խաչակիր շահատակութեան անդ եւրոպեանցն միաբանելոց՝ ՚ի վանումն չարաղանդ բարբարոսական սրշաւանաց բռնացելոց ՚ի տնօրէնական կողմանսն: Յորոց և ՚ի Թագաւորեալ մայրաքաղաքիս՝ որպէս ասացաք, պատեհաբար իմն սկիզբն առնու հրատարակումն գուշակաւոր բանիցս: Նախաշաւիղ արդեւք յապագայսն ամբոկ գործոյն վճարման: Եւ այնու օրինակաւ շրջեալ զողբերգականսն ՚ի յուրախութեանցն նուագս, աւետիս մատուցանէ զանդրէն կրկնապատիկ բարօրութեանցն լիա֊

Ահա առ քեզ՝ բանըս խաւսիմ,
վիճակ ւաթոռ՝ըս Թադէի :
Լո՛ւր ՚ի հեռուստ՝ իմոյս ձայնի,
լե՛ր ողբակից՝ ինձ յայս վայրի ·
Լա՛ց ընդ լացողս՝ որպէս ասի,
ըստ գրեցելումն՝ առ քեզ բանի :
Է Ձեռըն մատո՝ վաղվաղակի,
ինձ կապելոյս՝ ՚ի տան բանտի ·
Ա՛ռ ըզվըրէժս՝ աններելի,
՚ի թըշնամւոյն՝ գլխս գերողի :
Առ քե՛զ են բանք՝ իմ փարելի,
ո՛վ դու քաղաք՝ յոյժ պանծալի ·
Օ՛ որ Կոստանդեայ՝ թագաւորի,
շինեալ իսկիզբըն՝ ասխայի :
Երկրորդ եղեալ՝ երուսաղէմ,
և Նոր հըռոմ՝ զարմանալի ·
Սիրեցելոյն՝ աշակերտի,
աթոռ գոլով՝ փոխադրելի:
Ժողովարան՝ սուրբ վըկայից,
տուն և տեղի՝ մաքրագունից .
Գահոյք հըզաւր՝ մեծ արքայի,
յերկրի Նըման՝ երկնաւորի :
Լո՛ւր ինձ և դու՝ խոնարհաբար,
ունկըն մատո՝ լալոյս ձայնի .

Օ՜ ի սեփհական՝ ես քո էի ,
մայրաքաղաք՝ քում վիճակի ·
'Ի քէն շինեալ՝ յիս տաճարի , ե̄
անուանակիր՝ քոյդ խորանի ·
Հանգոյն վերին՝ ըն սիոնի ,
անհամեմատ՝ երկրաւորի :
Բայց այժմ թողեր՝ զիս ամայի ,
իբրև ըղքու՝ աւերակի ·
Կամ որպէս մարդ՝ անաւգնական ,
և 'ի մեռեալս՝ անյիշելի :
Օ՜ որ պաղատիմ՝ զարթուցանել ,
ըզ զաւրութիւնդ՝ անվանելի ,
Հատուցանել՝ բազմապատիկ ,
ըզվրէժ 'ի ծոց՝ իմոյն նեղչի :
Ահա գոչեմ՝ առ դըունըս քո ,
մայրաքաղաքդ՝ Եգիպտոսի ·
Աղէքսանդրո՝ սրդ ցանկալի ,
անուանակիր՝ քում շինողի :
Որ ես աթոռ՝ դու մարկոսի ,
մեզ աւետեաց՝ քարոզողի ·
Որ և դրախտին՝ ա̃ծայնոյ ,
տունկ բանաւոր՝ 'ի քեզ տընկի ·
Արմաւենիք՝ ծաղկեալ 'ի տան , ծ
հոյլք արդարոց՝ տ̃ն ընծայի ·

Եւ որպէս մայրք՝ լերանցանս,
են փառաձունք՝ քում նահանգի.
Հրեշտակերամք՝ և խաչակիրք,
և անմարմնոց՝ նմանք յերկրի :
Հինն և արդար՝ ուղղափառաց,
տարամերժող՝ հերձուածողաց,
Էին զաւակք՝ հայրապետաց,
որ առ 'ի քոյդ՝ նախադասին.
Թէպէտ և չեն այժմ 'ի մէջն,
այլ լոկ երազ՝ են զերծեալ :
Քանզի եղէր՝ և դու այրի,
կարծեմ նման՝ ինձ ողբալի.
Երբեմն էաք՝ մեք ընդձայն,
բայց այժմ եղաք՝ յոյժ եղկելի :
Որով հայցեմ՝ ձայն բաղձալի,
ել ողբակից՝ ինձ յայս վայրի.
Օ՜ն հաւատար՝ հանդուրժելի,
անաւրէնաց՝ եղաք գերի :
Է Սրբդ մրտիրոսք՝ յայսմ ամէնի,
մեզ երկուցանեցա՝ այս լինեցի.
Մաքուր մաղթանս՝ աղերսալի,
մատուցանել՝ տեառն արարչի :
Օ՜ն բարկութիւնն՝ որ ըստ մեղաց,
'ի քաղցրութիւն՝ փոխարկեսցի.

'Ի տեսանել՝ մեզ ըղձալի,
ւ'ի թըշնամիս՝ լինել չարի .
Թէ աստանաւր՝ հաճոյացի,
և եթէ անդ՝ հատուցանի,
Փափագ ըղձից՝ մեր կատարի,
պարգեւողէն՝ յամենայնի :
Բանիւ դատմամբ՝ ընդ քեզ կայցեմ,
ով Անտիոք՝ քոյր սիրելի .
Առաքելոց՝ տուն և տեղի,
յաւետարան՝ ըն մատթէի .
Յորում անունն՝ ըսքանչելի,
նախ առաջին՝ 'ի քեզ դընի .
Որ քրիստոնեայն՝ վերակոչի,
երկրըպագուաց՝ ըս քրիստոսի :
Ի'մ մերձաւոր՝ և ընձկալի, հ̄
յուրախութեան՝ ժամանակի,
Ընդէր չհասեր՝ վաղվաղակի,
ինձ 'ի թիկունս՝ աւգնականի .
Այլ թոյլ ետուր՝ վասըն խեթի,
մատնել 'ի ձեռս՝ անաւրինի :
Արդ լուր իմոյս՝ դառըն ձայնի,
և լեր կըցորդ՝ սըրման սըրտի .
Լաց ընդ լալիս՝ յամենայնի,
լեր տըրտմակից՝ թախծեալ սըրտի :

Ըստ առաքելոյն՝ սուրբ հրամանի ,
Լալ ընդ լացող՝ սըն վըշտալէ :

---

Արդ 'ի ստորին՝ կողմ աշխարհէ ,
զոր խաւսեցաք՝ ըս շատասցի ·
Բայց բանըս մեր՝ փոփոխեսցի ,
յելս արեւու՝ վերադարձցի ·
Ուր մեծըն Հայք՝ տուն Թորգոմի ,
յազգ և ծընուն՝ դըն յաբեթի ·
Մնդ ուր աթոռ՝ պարթեւազանց ,
Թագաւորացն՝ արշակունի :
Ճ Յորում էի՝ 'ի սահմանի ,
յառաջագոյն՝ որպէս ասի ·
'Ի յարքարու՝ Թագաւորէ ,
Նայունց շինեալ՝ ես լինէի :
Նա և Նրման՝ զոլ վիճակի ,
առաքելոյն՝ Թադէոսի ·
Յորմէ բղխեալ՝ ծաղիկ բարի ,
'ի շառաւիղ՝ գաւազանի ·
Գրիգորիոս՝ պարթեւազըն ,
լուսաւորիչն՝ այնմ աշխարհի ·
Խոստովանող՝ըն քրիստոսի ,
և մարտիրոս՝ սըն կենդանի :

Եւ արդ ա՛ռ քեզ՝ բանիւ բերեմ ,
հայաստանեա՛յց՝ եկեղեցի ·
Յորում կաթեաց՝ շողն երկնային ,
զպաղըն հալեաց՝ ըղհիւսիսի :
Լո՛յսն անըստուեր՝ ծաւալեցաւ ,
և ճառագայթն՝ անճառելի .
Սաստի՛կ եհար՝ ուռամբ ոսկի ,
ձայնք հընչեցին՝ ստորինս յերկրի :
Ա՛նդ հրեշտակա՝ցըն բազմութիւնք· ի
յերկնից հեղան՝ ըստ հեղեղի .
Եւ մարդկային՝ ազգ երկրածին ,
վերասլացան՝ յեթերըն երկնի :
Որ անապատ՝ էիր վայրի ,
եղեր նըման՝ փըթթեալ ծաղկի .
Եւ կուսական՝ արեամբ ներկեալ ,
պայծառացար՝ ՚ի գոյն վարդի ·
Որդիս ծընար՝ աւազանի ,
որ քան զաւազ՝ շա՛տ էր ծովի ·
Դիեցուցեր՝ կաթն ՚իս տենէ ,
սնուցեր արեամբ՝ըն կենդանի .
Դաստիարա՛կ՝ մանկանց բարի ,
տալով զաւըրէն՝սըն մովսէսի .
Եւ կերակուր՝ կատարելոց ,
զաւետարան՝ըն քրիստոսի :

Նա՛խ առաջին՝ ձեզ բարբառիմ ,
արփիափայլ՝ և հրաշալէ ·
Չորեքկերպից՝ըն նըմանեալ ,
յերկրի աթոռք՝ երկնաւորի :
Որ էք բղխումն՝ ձայնին ,
՚ի յաղբերէն՝ ադենային ·
Ցորս առ ՚ի ձէնջ՝ քառավտակ ,
յորդահոսան՝ գե՛տ հոլովին ·
Արբուցանե՛լ՝ ըզտոթեղերս ,
աւետաբեր՝ բղխմա՛մբ բանին ·
Առ որս խաւսիմ՝ աղերսալէ ,
դուք լըսեցէք՝ լալոյս ձայնի :

---

Ժ Երուսաղէ՛մ՝ քաղաք մեծի ,
Թագաւորին՝ երկնաւորի ·
Ուստի աւրէնք՝ և մարգարէք ,
աղբերաբար՝ բղխեալ յերկրէ :
Ցորմէ որդին՝ հա՛ւր միածին ,
լո՛յս ծագեցաւ՝ անճառելի ·
Եւ ինձ գրբեաց՝ երնութիւն ,
յառաջագոյն՝ քան զամենի :
Քանզի նախկին՝ հաւատացի ,
զորդի ընդ հաւր՝ դաւանեցի ·

Որով թէ ոչ՝ յանդըրգնէի,
զիս վեհագոյն՝ քեզ ասէի :
'Ի քեզ սպասեմ՝ զօրն 'ի փոյթ,
ես 'ի հեռուստ՝ երկիրպագի ·
Թէպէտ և այժմ՝ 'ի մի հողի,
երկրպագեմք՝ Նորին խաչի :
Բայց լո՛ւր և դու՝ ո՛վ սիրելի,
տարաբաղդելոյս՝ աղաղակի ·
Լե՛ր մխիթար՝ ցաւակցելի,
և ցո՛յց ինձ դեղ՝ բժշկեալ սրտի :
Եւ դու Հռոմ՝ մա՛յր քաղաքաց ; Ի
զերապայծառ՝ և պատուելի ·
Մեծին աթոռ՝ ըզ պետրոսի,
առաքելոց՝ գըլխաւորի :
Եկեղեցիդ՝ անշարժելի,
'ի կեփայեան՝ շինեալ վիմի ·
Դրանց դըժոխոց՝ անյաղթելի,
և կնիք երկնի՝ ցըն բացողի :
Ո՛րթ վայելուչ՝ բազմատեղի,
և հաստատարմատ՝ տունկ պաւղոսի ·
Ոռոգեալդ՝ արեամբ նորին,
որպէս ըզդրախտն՝ որ յադենի :
Մասին հասեալ՝ ըզ ղուկայի,
աստուածային՝ մատենագրի ·

Այս առ քեզ՝ բանըս խաւսիմ,
վիճակ ւաթոռ՝ըս թաղէի :
Լուր 'ի հեռուստ՝ իմոյս ձայնի,
լե՛ր ողբակից՝ ինձ յայս վայրի ·
Լա՛ց ընդ լացողս՝ որպէս ասի,
ըստ գրեցելումն՝ առ քեզ բանի :
Լ̆ Ձեռըն մատո՝ վաղվաղակի,
ինձ կապելոյս՝ 'ի տան բանտի .
Ա՛ռ ըզվըրէժս՝ աններելի,
'ի թըշնամույն՝ զիս գերողի :
Առ քե՛զ են բանք՝ իմ փարելի,
ո՛վ դու քաղաք՝ յոյժ պանծալի .
Օ՛ որ Կոստանդեայ՝ թագաւորի,
շինեալ իսկիզըն՝ ասիայի :
Երկրորդ եղեալ՝ երուսաղէմ,
և Նոր հըռոմ՝ զարմանալի ·
Սիրեցելոյն՝ ա՛շակերտի,
աթոռ գոլով՝ փոխադրելի:
Ժողովարան՝ սուրբ վըկայից,
տուն և տեղի՝ մաքրագունից .
Գահոյք հըզաւր՝ մեծ արքայի,
յերկրի Նըման՝ երկնաւորի :
Լո՛ւր ինձ և դու՝ խոնարհաբար,
ունկըն մատո՝ լալոյս ձայնի .

Զի սեփհական՝ ես քո էի ,
մայրաքաղաք՝ քում վիճակի ·
՚Ի քէն շինեալ՝ յիս տաճարի , Խ̄
անուանակիր՝ քոյդ խորանի ·
Հանգոյն վերին՝ ըն սիոնի ,
անհամեմատ՝ երկրաւորի :
Բայց այժմ թողեր՝ զիս ամայի ,
իբրեւ ըղըու՝ աւերակի ·
Կամ որպէս մարդ՝ անաւգնական ,
եւ ՚ի մեռեալս՝ անյիշելի :
Զոր պաղատիմ՝ զարթուցանել ,
ըզ զաւրութիւնդ՝ անվանելի ,
Հատուցանել՝ բազմապատիկ ,
ըզվրէժ ՚ի ծոց՝ իմոյն նեղչի :
Ահա՛ գոչեմ՝ առ դրունըս քո ,
մայրաքաղաքդ՝ Եգիպտոսի ·
Աղէքսանդրո՝ սրդ ցանկալի ,
անուանակիր՝ քում շինողի :
Որ ես աթոռ՝ դու մարկոսի ,
մեզ աւետեաց՝ քարոզողի ·
Որ եւ դրախտին՝ ա̃ծայնոյ ,
տունկ բանաւոր՝ ՚ի քեզ տընկի ·
Արմաւենիք՝ ծաղկեալ ՚ի տան , ծ
հոյլք արդարոց՝ ա̃ն ընծայի ·

Եւ որպէս մայրք՝ լեռնականաւ ,
Էն փառաձունք՝ քում նահանգի .
Հրեշտակերամբք՝ և խաչակիրք ,
և անմարմնոց՝ նըմանք յերկրի :
Հինն և արդար՝ ուղղափառաց ,
տարամերժող՝ հերձուածողաց ,
Էին զաւակք՝ հայրապետաց ,
որ առ ՚ի քոյդ՝ նախագահէ .
Թէպէտ և չէին՝ այժմ ՚ի միջի ,
այլ լոկ երբեմն՝ են գիրերի :
Քանզի եղեր՝ և դու այրի ,
կարծեմ նըման՝ ինձ ողբալի .
Երբեմն էաք՝ մեք ըղձալի ,
բայց այժմ եղաք՝ յոյժ եղկելի :
Որով հայցեմ՝ ով բաղձալի ,
ե՛ւ ողբակից՝ ինձ յայս վայրի .
Օ՜ի հաւասար՝ հանդուրժակի ,
անաւըրինաց՝ եղաք գերի :
Է Արդ մըխիթար՝ յայսմ աղէտի ,
մեզ երկոցունցս՝ այս լինիցի .
Մաքուր մաղթանս՝ աղերսալի ,
մատուցանել՝ տըն արարչի :
Օ՜ի բարկութիւնն՝ որ ըստ մեղաց ,
՚ի քաղցրութիւն՝ փոխարկեսցի .

'Ի տեսանել՝ մեզ ըղձալի,
ւ'ի թըշնամիս՝ լինել չարի ·
Թէ սատանաւր՝ հաճոյացի,
և եթէ անդ՝ հատուցանի,
Փափագ ըղձից՝ մեր կատարի,
պարգևողէն՝ յամենայնի :
Բանիւ դատմամբ՝ ընդ քեզ կացցեմ,
ով Անտիոք՝ քոյր սիրելի ·
Առաքելոց՝ տուն և տեղի,
յաւետարան՝ ըն մատթէի ·
Ցորում անունն՝ ըսքանչելի,
Նախ առաջին՝ 'ի քեզ դընի ·
Որ քրիստոնեայն՝ վերակոչի,
երկրըպագուաց՝ ըս քրիստոսի :
Ի'մ մերձաւոր՝ և անձկալի,
յուրախութեան՝ ժամանակի,
Ընդէր չհասեր՝ վաղվաղակի,
ինձ 'ի թիկունս՝ աւգնականի ·
Այլ թոյլ ետուր՝ վասըն խեթի,
մատնել 'ի ձեռս՝ անաւրէնի :
Արդ լո՛ւր իմոյս՝ ղաւըն ձայնի,
և լե՛ր կըցորդ՝ սյրման սըրտի ·
Լա՛ց ընդ լալիս՝ յամենայնի,
լե՛ր տըրտմակից՝ թախծեալ սըրտի :

Ըստ առաքելոյն՝ սուրբ հրամանի ,
Լալ ընդ լացող՝ սրն վրշտալի :

---

Սիրտ 'ի սորին՝ կողմ աշխարհի ,
զոր խաւսեցաք՝ ըս շատասցի ·
Բայց բանըս մեր՝ փոփոխեսցի ,
յելս արևու՝ վերադարձցի ·
Ու մեծըն Հայք՝ տուն Թորգոմի ,
յազգ և ծընուն՝ դըն յաբեթի ·
Մնդ ուր աթոռ՝ պարթևազանց ,
Թագաւորայն՝ արշակունի :
ձ Յորում էի՝ 'ի սահմանի ,
յառաջագոյն՝ որպէս ասի ·
'Ի յարքարու՝ Թագաւորէ ,
Նոցունց շինեալ՝ ես լինէի :
Նա և Նըման՝ զոլ վիճակի ,
առաքելոյն՝ Թադէոսի ·
Յորմէ բղխեալ՝ ծաղիկ բարի ,
'ի շառաւիղ՝ գաւազանի ·
Գրիգորիոս՝ պարթևազին ,
լուսաւորիչն՝ այնմ աշխարհի ·
Խոստովանող՝ըն քրիստոսի ,
և մարտիրոս՝ սըն կենդանի :

Եւ արդ ա՛ռ քեզ՝ բանիւ բերիմ ,
հայաստանեա՛յց՝ եկեղեցի ·
Ցորում կաթեաց՝ շողն երկնային ,
զպաղըն հալեաց՝ ըղհիւսիսի :
Լո՛յսն անըստուեր՝ ծաւալեցաւ ,
և ճառագայթն՝ անճառելի ·
Սաստի՛կ եհար՝ ուռամբ ոսկի ,
ձայնք հընչեցին՝ ստորինս յերկրի :
Մ՟նդ հրեշտակա՝ցըն բազմութիւնք· ղ̃
յերկնից հեղան՝ ըստ հեղեղի ·
Եւ մարդկային՝ ազգ երկրածին ,
վերասլացան՝ յեթերն երկնի :
Որ անապատ՝ էիր վայրի ,
եղեր նըման՝ փըթթեալ ծաղկի ·
Եւ կուսական՝ արեամբ ներկեալ ,
պայծառացար՝ 'ի գոյն վարդի ·
Որդի՛ս ծընար՝ աւազանի ,
որ քան զաւազ՝ շա՛տ էր ծովի ·
Դիեցուցեր՝ կաթն 'իս տենէ ,
սնուցեր արեամբ՝ըն կենդանի ·
Դաստիարա՛կ՝ մանկանց բարի ,
տալով զաւրէն՝սըն մովսէսի ·
Եւ կերակուր՝ կատարելոց ,
զաւետարան՝ըն քրիստոսի :

Յաճախեալ էիր՝ երանելի,
այսու բնաւից՝ դու ցանկալի.
Երկնաւորաց՝ և երկրայնոց,
և կենդանեաց՝ բոլոր սեռք:
Բայց հարցանեմ՝ ով բարձրալի,
բանիս խնդրեմ՝ պատասխանի.
Տեղեկացո՛ ՝ զիս հաւաստի,
հարցանելեացս՝ այս ընդ կարգի:
Այժմ ո՛ւր է քո՝ Թագըն զարդի;
և կամ ոսկա՛կըն հրաշալի.
Ո՛ւր զարդարանքդ՝ ըն զգեստի,
հարսին որդւոյ՝ Թագաւորի:
Ո՛ւր պաճուճանք՝ հարսնարանի,
կամ ոսկեհուռն՝ վերջաւորի.
Է՛ր չէ՞ փեսայն՝ 'ի խորանի,
կամ փեսաւերքն՝ 'ի տաճարի.
Ո՞ւր են մանկունքն՝ առագաստի,
զի ոչ հընչեն՝ զերգն ըղձաւթի.
Օ՛ երգ լըռեալ՝ ո՛չ հարկանեն.
զկոչըն հընչող՝ տարածանացի:
Ո՛ւր պարարակ՝ եզնամոլին,
զկա՛րդ 'ի քեզ՝ ոչ զենանին.
Կամ մատռուակ՝ քըն բաժակին,
զի՞ ո՛չ բաշխեն՝ զանոյշ գինին.

Ուր թագաւորք՝ ըն զուարճակցին,
ընդ զինու որդւոյն՝ անապական ·
Կամ տարածեալ՝ զերկ հայրենին,
յա՞ ՚ի համբոյր՝ մեղաւորին :
Ո՛ւր քաղցրաձայնն՝ երաժշտի,
կամ գեղեցկութեան՝ եղանակի ·
Ո՛ւր ընթերցողք՝ ըն սուրբ տառի,
կամ վարդապետքն՝ ՚ի հանդիսի ·
Ո՛ւր է աթոռ՝ հայրապետի,
կամ քահանայքն՝ ՚ի սուրբ բեմի ·
Ո՛ւր սարկաւագքն՝ են ՚ի սպասու,
կամ պաշտաւնեայք՝ պատարագի ·
Ո՛ւր են խընկոցն՝ ՚ի քեղ բուրմունք,
աներեւոյթ՝ երեւելի ·
Կամ ժողովոց՝ ըն զուամարութն,
յաւուր տաւնի՝ ցըն տէրունի :
Ո՛ւր են գահոյք՝ թագաւորի,
վաղարշապատ՝ քո քաղաքի ·
Կամ նախարար՝ քըն արքայի,
այրարատեա՝ նըրդ գաւառի ·
Ո՞ւր են իշխանքն՝ որ առաջի,
կամ զինակիրքն՝ որ են վերջի ·
Ո՛ւր զաւրականքն՝ յասպարիսի,
կամ՝ լեգէոնքն՝ ՚ի ճակատի ·

Ո՛ւր մեծամեծքն՝ 'ի բազմոցի,
կամ ո՛ւր սեղանն՝ ամենալի.
Ո՞ւր են ազատքն՝ 'ի տաճարի,
կամ տեառնորդիքն՝ 'ի ծաղկոցի:
Ահա բարձաւ՝ այս վաղազոյն,
յորժ հեռացաւ՝ որ չերևի.
Անուրջք և երազք՝ էին յայտնի,
արդ ծածկեցաւ՝ 'ի զարթմընի:
Այլ փոխանակ՝ այսր ամենի,
յորժ հակառա՝ կըն տեսանի.
Քանզի նըստիս՝ ո՛րբ և այրի,
տըխուր դիմաւք՝ գերդ 'ի սըգի:
Վասն այն ըզքեզ՝ իսկ կոչեցի,
լըսե՛լ սըգակից՝ ինձ յայս վայրի.
Քանզի նըման՝ քոյն ցուցանի,
իմոյս նորոգ՝ եղեալ չարի:
ձԼ Արդ ուսուցես՝ ո՛վ սիրելի,
և զե՛մս ողբալ՝ ըստ արժանի.
Ի բըրու հըմուտ՝ լալեաց բանի,
և քաջ տեղեակ՝ այրման սըրտի:
Բայց և ըզքեզ՝ յա՛յս հրաւիրեմ,
արևելեան՝ քաղաքդ Անի.
Կացո՛րդ իմոյս՝ լինել ձայնի,
և ըմփոփիչ՝ տարակուսի:

Քանզի և դու՝ երբեմն էիր,
վայելչական՝ հարսն 'ի քաւղի
Մերձաւորաց՝ յոյժ ցանկալի,
հեռաւորաց՝ փափագելի ։
Շինեա՛լ եղեր՝ տուն արքունի,
ընտրեալ նահանգ՝ ըստ շարայի ·
Թագաւորաց՝ բագրատունի,
որ 'ի ցեղէն՝ իսրայէլի ·
Յազգէ՛ սերեալ՝ մեծին դաւթի,
աստուածահաւր՝ մարգարէի ·
Գեղեցկանունդ՝ զարմանալի,
որ երրակի՝ տառիւ բերի ·
Երրորդութեան՝ ըն խորհրդի, ճ̄ի
որ միշտ 'ի քէն՝ երկրպագի ։
Յորում էիր՝ ժամանակի,
բերկրեալ ուրախ՝ և ցնծալի ·
Որպէս այգի՝ ողկուզալի,
կամ ձիթենի՝ պտղով 'ի լի ·
Մանկունքդ քո՝ զուարթալի,
նըման նորոգ՝ բուրաստանի ·
Դըստերքդ քո՝ պաճուճալի,
յերգ և քընար՝ միշտ 'ի խաղի ·
Իսկ թագաւորքդ՝ քո պանծալի,
նըստեալ յաթոռ՝ թագ 'ի գըլխի ։

Եւ զաւրականքն՝ աստի ւ անտի ,
կալով 'ի սպաս՝ իւր հրամանի :
Նա և ոգիքն՝ ըզ օրինին ,
նըման դասուց՝ ըն հրեղինի·
Յարմարապէս՝ յաւրինուածով ,
կաթուղիկէն՝ եկեղեցի :
Այն որ հանդէսն՝ և հաւատար ,
վերնականոյց՝ ըն խորանի :
խծ Հայրապետք՝ ւեպիսկոպոսունք ;
և քահանայք՝ ւայլք ըստ կարգի ·
Իւրաքանչիւր՝ յիւրում դասու ,
պատշաճաւորն՝ յայն տաճարի :
Օ որ թէ ասեմ՝ հարկ լինիցի ,
է դըժուարին՝ ւերկարելի ·
Եւ անաւգուտ՝ այժմիս բերել ,
յորոց և չէ՝ մի 'ի միջի :
Քանզի անցին՝ ըստ երազի ,
որպէս ծաղիկ՝ ամարայնի ·
Եւ այժմ ո՛չ են՝ ւո՛չ երևի ,
ըստ գրեցելոյն՝ 'ի սաղմոսի ·
Իբր ըղձորդեալ՝ յորդ վտակի ,
գարնանաւորեր՝ հեղեղատի ·
Կամ զուռուցեալ՝ պըղպըջակի ,
որ ընդ լինել՝ ըն պատառի :

Սուրբն անաղարտ՝ անաւրինին ,
որ մեր արեանն՝ էր 'ի ոտին :
Որ չէ՛ յաղթեալ՝ և ո՛չ յաղթի ,
մինչև 'ի գալ՝ կատարածի .
ՃԿ Նոյն նա եհաս՝ ուրեմն 'ի քեզ ,
որպէս յետ յայս՝ ժամանակի .
Հրնձեաց զորայն՝ անդատաստանի ,
կանաչաւորն՝ և 'ի հասկի .
Զայգին խըլեաց՝ արմատաքի ,
մերկեաց յոստոցն՝ ըղձիթենի .
Եհեղ զարիւն՝ սրբոց յերկիր ,
հօտեաց նորանն՝ ջրրոց գետի :
Արար զհամկ՝ անթըւելի ,
անթաղ 'ի կոյր՝ զէշ գազանի .
Քահանայից՝ ըն քրիստոսի ,
արեամբ ներկեաց՝ զեկեղեցի .
Սարկաւագաց պաշտօնէից ,
մարմինք անկեալ՝ մէջ փողոցի :
Եւ այլ բազում՝ որ ոչ թըւի ,
և է ասելն՝ անկարելի .
Որ քեզ հասին՝ յայնըմ վայրի ,
բոլոր ումեմն՝ մասունք չարի ..
Եւ արարին՝ ըզքեզ գերի ,
քան ըզստաղենն՝ այլ աւելի :

ՃՀ Վասն այսորիկ՝ ո՛վ անձկալք,
որ ես ներհուն՝ այ՛ր ամենի.
’Ի քոյն յայնժամ՝ խիստ աղետի.
ծանի՛ր և զի՛մս՝ ողորմելի.
Եւ որպէս փորձ՝ տարակուսի,
լե՛ր տրտմակից՝ ինձ յայս վայրի.
Քանզի նըման՝ յոյժ տեսանի,
իմըս քոյոյն՝ հասեալ չարի:
Արդ ժողովեա՛՝ զդըստերըս քո,
վասն իմ ’ի լաց՝ նի՛ստ ու’ի սըգի.
Գոչեա՛ ձայնիւ՝ կականելի,
շարժեա՛ ’ի յողբ՝ զամեն հոգի.
Զի զովացումն՝ այրման սըրտի,
ո՛չ է այլ ինչ՝ քան այս լինի.

---

Բայց իմ աղէտս՝ այս ցաւալի,
ո՛չ փոքրագոյն՝ դեղով բուժի.
Եւ ո՛չ միով՝ տեղեաւ փակի,
կամ մասնաւոր՝ մարդկամբ սփոփի:
Այլ կարեկից՝ այսր աղէտի,
պա՛րտ է կոչել՝ աղերսալի,
ՃՁ Զչորեքծագեան՝ կողմ աշխարհի,
ուր ե՛նդ հանուր՝ մարդկան որդի.

Օ՜արեւելս՝ արեւմըտիւք,
և ըզհարաւ՝ ընդ հիւսիւսի ·
Ա՜ռ որս գոչեմ՝ ձայնիւ գուժի,
լալով խաւսիմ՝ զայս ասելի ·
Թէ՛ ազգք ամէն՝ բանաւորի,
ժողովեցէ՛ք՝ 'ի մի՛ վայրի ·
Ա՛րք և կանայք՝ հարք և որդիք,
հարսն և փեսայ՝ առագաստի ·
Տըղայք մանկունք՝ ւերիտասարդք,
ծերք և հանուր՝ չափ հասակի :
Թագաւորք՝ հանդերձ զաւրաւք,
պէտք և իշխանք՝ տեա՛րք աշխարհի ·
Հայրապետք՝ տեսուչ հաւտի,
կարգեալ իշխանք՝ յեկեղեցի ·
Քահանայք՝ սարկաւագաւք,
և խո՛ւմբ հանուրց՝ գղերիկոսի ·
Վանականք՝ յանապատի,
որք անմարմի՛ն՝ էք 'ի մարմնի ·
Հո՛յլք իմաստուն՝ սուրբ կուսանաց, ճղ
որ ցեղակից՝ էք սրովբէի ·
Դա՛սք հանճարեղ՝ վարդապետաց,
և քաղցրաձայն՝ պաշտաւնէից ·
Օ՜րս ողբակի՛ց՝ ինձ հրաւիրեմ,
յորդւոց իմոց՝ կոտորածի :

Լացէք լացէ՛ք՝ բարձրը ձայնիւ,
առ հասարակ՝ յամենայնի ․
Օ իս ողբացէ՛ք՝ կողկողալի,
որ էք ծընունդ՝ աւազանի ։
Եդեսիէ՝ Ուռհայ քաղաք,
որդեկորոյս՝ որբ և այրի ․
Կանչեմ առ ձեզ՝ ձայն կանացի,
կականալըր՝ ողորմելի ․
Օ քաւղս 'ի գլխոյս՝ մերկանալով,
զիմ պատառեմ՝ ծածկոյթ զարդի ․
Փետեմ ըզվարսս՝ իմ ցանկալի,
խըզեմ ըզհերս՝ անխնայելի ․
Քարամբ ծեծեմ՝ զկուրծըս սըրտի,
բաղխեմ զերեսս՝ իմ յապտակի ։
Մ Նըստիմ 'ի սուգ՝ 'ի տան մըթի,
որպէս աւրէն՝ է սգաւորի ․
Եւ փոխանակ՝ որդան զգեստի,
սեաւ ըզգենում՝ գոյն տըխրելի ․
Հեղում արտասուք՝ անչափելի,
յորդ և առատ՝ նըման գետի ։
Քանզի առա՛կ՝ եղէ յերկրի,
տիեզերաց՝ նախատելի ․
Եւ անցաւորք՝ ճանապարհի,
վա՛յ 'ի վերայ՝ ասեն վայի ։

Զի ո՛չ ծածուկ՝ էի տեղի ,
կամ 'ի յանկեան՝ ինչ թագըստի ,
Այլ 'ի գետոյցն՝ որ յագենի ,
էի բազմեալ՝ ես 'ի միջի ·
'Ի յեփրատայ՝ և տիգրիսէ ,
որ միջագետք՝ անուանէի ·
Արքայարան՝ մեծ արքայի ,
Հայ ւասորւոց՝ Աբգարոսի :
Արդ նախ ասեմ՝ զայն որ կրեցի ,
'ի ձեռանէ՝ նո՛ն ըղջաւրի ,
Ապա զչարիսն՝ որ պատահեաց , մծ
ինձ ըստ մեղաց՝ յանկարծակի :
Դո՛ւք հեզաբար՝ աստ մատուցէք ,
զականջըս ձեր՝ իմոյս բանի ·
Զոր ծանուցից փոքր 'ի շատէ ,
ձեզ ըղձանգատս՝ իմ ըստ կարգի :
Ես մա՛յր էի՝ բազմորդութեան ,
անթիւ ծընայ՝ դուստր և որդի ·
Զորս մայրաբար՝ դարմանեցի ,
խստեանց իմոց՝ կաթն արբուցի ·
Գեղեցկատիպ՝ յաւրինեցի ,
վայելչապէս՝ զարդարեցի :
Քանզի երկիր՝ պարա՛րտ էի ,
աղբիւր կաթին՝ յո՛րդ բղխէի ·

Աւետաբեր՝ նըման վայրի ,
ւայլ գերագոյն՝ որպէս Թուէի ·
Բիւր բարութեամբ՝ լըցեալ կայի ,
’ի զանազան՝ բերմունս երկրի :
Զհուր կենդանի՝ յինէն բըղխէր ,
զուարթատեսիլ՝ բոյսս յաւրինէր ·
Մի Ըզքուրաստանս՝ արբուցանէր ,
և ըզմարդիկ՝ ուրախ առնէր :
Ծոփս ’ի միջի՝ իմ ծածանէր ,
քաղցրիկ աւդով՝ ըն ծիծաղէր ·
Զաղտեղութիւն՝ տըղմին մաքրէր ,
ըզհրապարակ՝ սըն զարդարէր :
Բազմագունի՝ տունկ յաւրինէր ,
որպէս ըզդրախտն՝ որ յեդեմ էր ·
Սաղարթաբեր՝ ծաւովք ծաղկէր ,
առատագոյն՝ պըտղաւետէր :
Տերեւախիտ՝ հեզի՛կ շարժէր ,
հոտ անմահից՝ յիւրմէն բուրէր ·
Նարդոս քըրքում՝ ինձ ընծիւղէր ,
վարդ մանուշակ՝ վերաբերէր :
Առաւաւտեան՝ ցաւղն իջանէր ,
ոսկենըման՝ ճաճանչ փայլէր ·
Անհամեմատ՝ յերկրէ նմ էր ,
պըտղովքն ամեն՝ զոր ընծայէր :

Զօր և տիւ՝ ողջ կարէր ,
մի առ միոյ՝ թէ և կամէր :
Զի զանգաստանս՝ իմ թէ գործէր , մլ
ոք երկրածին՝ և սերմանէր ,
Հարիւրաւոր՝ վաթսունաւոր ,
կամ երեսուն՝ պտղաբերէր :
Տոհմականաւք՝ զոր ընծայէր ,
բազմաբեղուն՝ բարիս բերէր ․
Ցըշտեմարա՛նըս ժողովէր ,
այնու զորդիսն՝ իմ կերակրէր ․
Զամենեսեան՝ ուրա՛խ առնէր ,
'ի բիւր բարիսն՝ որ ընծայէր :
Բայց թէ ըզձիրս՝ իմ յանգաւոր ,
ոք պատմեսցէ՝ պատշաճաւոր ,
Կարծեմ թէ չէ՛՝ նըմանաւոր ,
այս քաղաքացս՝ որ երկրաւոր :
Լո՛յն և արձակ՝ նըստեալ յաթոռ ,
որպէս 'ի կա՛ռըս թագաւոր ․
Կամ թագուհի՝ յոյժ գեղաւոր ,
ոսկետըռուն՝ և ճամկաւոր ․
Փողփողելով՝ 'ի վերջաւոր ,
պայծառազգեստ՝ և պըճնաւոր ․
Շուրջանակի՝ պարառաւոր , մի
պարիսպ ածեալ՝ լայն և ամուր :

Աշտարակաւք՝ բարձր աճաւոր ,
իմաստապէս՝ ւարուեստաւոր .
Որպէս գըլուխ՝ըն դիպաւոր ,
մակ հաւասար՝ անձին բոլոր :
Հաստահեղոյս՝ հիմամբ 'ի խոր ,
մահարձանաւք՝ պըսակաւոր .
Տունք և տաճար՝ գարմանաւոր ,
շինեալ 'ի գիրկս՝ իմ գեղաւոր .
Յարկք և փողոց՝ տեղ վաճառոց ,
գոյր յաւրինեալ՝ հանճարաւոր :
Բայց և գլխորան՝սըն լուսաւոր ,
Թէ որպիսիք՝ յոյժ փառաւոր .
Զայն չէ ասել՝ ինձ հնարաւոր ,
կամ հողեղէն՝ մարդ երկրաւոր :
Զի երկնայնոցն՝ էր նմանաւոր ,
վերնագունին՝ հանգիտաւոր .
Զարմանազան՝ և աննըման ,
զոր չէ տեսեալ՝ ոք բանաւոր :
մծ Ա՛յդպէս կացի՝ յոյժ խընդաւոր ,
զերդ մայր որդւովք՝ բերկրեալ յորդոր .
Դուստր և որդիք՝ իմ բիւրաւոր ,
զինեւ կային՝ շուրջ պարաւոր .
Փըթթեալ վարդից՝ նըման թերթից ,
կամ գեղունակ՝ ճըղած խընձոր :

Որպէս զայգի՝ մեծ դաշտաւոր ,
կամ բարունակ՝ ողկուզաւոր .
Իբր 'ի յանկեան՝ տունկ սորեկորթ .
տեղուոջ պարարտ՝ և զաւրաւոր:
Եւթանասունք՝ խորհրդաւոր ,
աւանք պատեալ՝ զինև բոլոր :
Եւ ես բազմեալ՝ զերդ թագաւոր ,
կայի 'ի մէջ՝ հանդիսաւոր :

Արդ այս բարիքս՝ որ պատմեցան ,
փոքր 'ի շատէ՝ բան ճառեցան .
Որ 'ի յանցեալ՝ դարուն ըսկսան ,
և այժմ աւին՝ փոյթ ըզվախճան :
Ցորում էի՝ ուրախական ,
մասին հասեալ՝ երանական .
'Ի տեսողաց՝ ներբողական , մկ
և լըսողաց՝ զարմանական :
Բայց 'ի հասեալ՝ ներկայական ,
ժամանակիս՝ որ դիպեցան ,
Բարիքն ամէն՝ ըսպառեցան ,
և քաղցրութիւնք՝ ըն դառնացան .
Եւ երանի՝ տալոյն փոխան ,
զիս եղկելի՝ այժմիկ կարդան :

Թռչնամեաց դասք՝ ըն մեր խընդան,
և սիրելեք՝ ձայնիւ ողբան.
Գլուխ 'ի վերայ՝ իմ ամբառնան,
Միք 'ի ներքոյ՝ ոտից եզան:
Ազգ որ ծառայքն՝ էին բնական,
ծընունդք որդիքն՝ աղախնական.
'Ի սառայէ՝ փախըստական,
հագար ւորդին՝ հալածական.
Օ՛ն մի՛ ժառանգ՝ նա հայրական,
աբրահամու՝ գոլ սեփհական :
Ա՛յժմ յազատիս՝ վերայ յարեան,
հանել զտիկին՝ըս կամեցան.
մհ Անժառանգել՝ զիս խորհեցան,
և հալածել՝ յորդւոց մարդկան ;
Եւ թէ զի՛արդ՝ այս գործեցան,
կամ յի՞նչ իրաց՝ պատահեցան,
Ժա՛մ է ասել՝ դէմ յանդիման,
պատմել բանիւ՝ ողբերգական :
Թէպէտ և ո՛չ՝ հընարական,
ըզքովանդակն՝ է ասել բան .
Սակայն փոքունք՝ մեզ բաւական,
յայտնել զաղէտն՝ որ դիպեցան :
Քանզի այդւո՛յն՝ այն պաշապան,
եդ որ ըստեղծ՝ զիս իսկըզբան .

Եւ աւանդեաց՝ ինձ պատուիրան,
 ուստի և կեանք՝ անմահական:
Յայնժամ որդի՝ քըն մայրական,
 մարտեան ընդ իս՝ պատրողական.
Տեսեալ ՚ի փառս՝ անզուգական,
 չա՛ր նախանձու՝ բորբոքեցան:
Յերկիր հանին՝ անիծական,
 փու՛շ և տատասկ՝ յորմէ բուսան.
Մեղաւք լցին՝ անյագական, մՃ
 սիրոյ մերժեալ՝ յարարչական:
Մինչև հովուն՝ արիական,
 խընդրեաց ըզհաւտն՝ իւր բանական.
Բարձեալ ՚ի յուսն՝ աստուածական,
 հանել ՚ի վեր՝ ուստի անկան:
Սակայն դարձեա՛լ՝ Թըշուառացայ,
 յերկնից յերկիր՝ կործանեցայ.
՚Ի բարձրութեան՝ ցըն վայր անկայ,
 խոնարհեցայ՝ և ափշեցայ:
Ըզպատուիրան՝ ըն մոռացայ,
 և յաւըրինա՝ ցըն հեռացայ.
Բազմատեսակ՝ մեղաւք լըցայ,
 և չար գործովք՝ աղտեղացայ:
Սողովմոնեան՝ խորան եղայ,
 և կեդ՛արու՝ անուանեցայ.

Քանզի խէթիւ՝ յիս նայեցաւ,
 լուսն արևուն՝ և սևացայ:
Արդ վա՛յ ասեմ՝ ինձ ըստ դաւթայ,
 քանզի յերկար՝ պանդխտեցայ.
Իսկըզբանէ՝ յորմէ ըսկսայ, մղ
 լինել ազգին՝ ցեղին հռովմայ:
Յայնժամ յարեան՝ 'ի յիմ վերայ,
 ազգ և ծընուն՝դըն հազարայ.
Յառաջ զորդիսն՝ իմ զոր ծընայ,
 կոտորեցին՝ 'ի յանխընայ.
Ապա զաւան՝սըն պարագայ,
 որ շուրջ կային՝ զինև 'ի ճահ.
Աւերեցին՝ և քանդեցին,
 հողաբլուր՝ թողին զնոսայ:
Եւ այս 'ի յամս՝ էր ոչ սակաւ,
 այլ քառասուն՝ կամ գերակայ,
Յորս 'ի յուժոյ՝ պակասեցայ,
 և զաւրութեամբ՝ տըկարացայ.
Հէնք 'ի հինից՝ գային վերայ,
 ասպատակաւ՝ ես գերեցայ.
Պէսպէս ցաւովք՝ հիւանդացայ,
 յախտըս մահու՝ ծիւրեալ անկայ:
Եւ դեղ ցաւոցս՝ իմ ո՛չ գըտայ,
 և ո՛չ բըժիշկ՝ որ դեղըն տայ.

'Ի դըժոխոց՝ դըրունըս հասայ, Ց
Նա և յատա՝ կըն մերձեցայ :

---

Արդ զա՛յս տեսեալ՝ բըռնաւորին,
և կամակոր՝ չար վիշապին,
Սողայր և գայր՝ նըման աւձին,
և նենգաւոր՝ թիւնաւորին ·
Աւռ 'ի խայթել՝ գարշապարին,
և հարկանել՝ գաղտնի նետին ·
Այն որ ղաւղեալ՝ և թագուցեալ,
ծածկեալ ունէր՝ զնենգն 'ի մըտին :
Եւ դարանեալ՝ գայլն 'ի մայրին,
ինձըն թագչէր՝ յանապատին ·
Որում անուն՝ իւր կոչէին,
զանկի՛ չարեաց՝ գործաւնէին :
Յարձակեցաւ՝ յանկարծաւրէն,
և յեղակարծ՝ ժամանակին ·
Յորժամ տեսին՝ և ծանուցին,
զիմ զաւրականքն՝ որ աստ չէին :
Յա՛յնժամ պատեաց՝ շուրջանակի,
զիս պաշարեաց՝ զաւրաւք նորին ·
Արաբացւոց՝ մոլորականին, ԺԴ
որ ըստ անուանն՝ իսկ ո՛չ թուին :

Եղիմացէք՝ և քեռացէք ,
անթիւ բազում՝ ընկերօքն ․
Շամբք և հաւտիւք՝ պատեալ կայքն ,
անել ւանձուտ՝ գէս ոանէքն ·
Մէշտ հանապազ՝ մարաընչէքն ,
ասք ըստ աւրէ՝ գէս նեղէքն ·
Զեւ զանազան՝ փափուխէքն ,
Նոքաւք 'ի մարտ՝ վառեալ գայքն :
․Օ ըրահաւորք՝ մըկընդաւորք ,
Ջաւշէւք ծածկեալ՝ բոլոր անձէն ·
Սուսաւորք՝ աղեղնաւորք ,
նետիւք հարեալ՝ խոցոտէին :
Պատնէշ կանգնեալ՝ մեքենայիւք ,
ըռըմբաքա՝ բըս հոսէին ․
Ծեծէին՝ հարկանէին ,
անհընարին՝ տագնապէին :
Բայց այսոքիւք՝ ո՛չ կարացին ,
յաղթել քաջացն՝ որ յիս կային ·
Ժե Մինչև 'ի յայլ՝ հընար մըտեալ ,
այն խորամանկ՝ նենգաւորին ·
Որպէս խըլուր՝ դըն փորէին ,
ներքոյ հիմանն՝ ամրականին ·
Սիւնս և նեցուկ՝ հաստատէին ,
աշտարակացն՝ և պարըսպին ·

Ա՝ռ 'ի յայրել՝ պատրաստէին ,
որպէս աւրէն՝ էր այս նոցին :
Յայնժամ բարբա՛ռ՝ արձակէին ,
առ ժողովուրդ՝ ըս քաղաքին .
Մի՛ յամառել՝ ասեն 'ի նմին ,
զի մի՛ մահու՝ մեռանիցին .
Այլ տալ յաւժա՛ր՝. և կամովին ,
զի բարութեանց՝ պատահեսցին :
Եւ զայս լուեալ՝ ժողովէին ,
քաջն և արիքն՝ 'ի միասին .
Պընդէին՝ հաստատէին ,
ուխտ և դաշի՝նըս դընէին .
Ո՛չ յերկուանալ՝ 'ի հանդիսին ,
ո՛չ լըքանել՝ պատերազմին .
Ո՛չ հաւանել՝ բանից նոցին , ՃԼ
և ո՛չ բանալ՝ կամաւ նըմին :
Այլ բարիոք՝ վարկանէին ,
զի անդանսուր՝ մեռանիցին .
Քանթէ սըրտել՝ մեծի ուխտին ,
և վայելել՝ առաւրէին :
Մակաբայեանց՝ նըմանէին ,
և վարդանանց՝ պատերազմին .
Միշտ առ միմեա՝նըս ձայնէին ,
աղաղակաւ՝ գո՛յս ասէին .

Մի՛ երկիցուք՝ զանգիտելով,
Ե՛ղբարք 'ի սրոյ՝ մահկանացուին.
Եւ ընդ քաջացն՝ արիութեան,
մի՛ խառնեսցուք՝ զերկիւղ վատին:
Անուն բարի՝ ժառանգեսցուք,
որ ընթանայ՝ յազգ երկրածին.
Անդրդուելի՝ կազմել զհոգին,
վասըն յուսոյ՝ երկնաւորին:
Մե՛զ աւրինակ՝ բարեաց ասեն,
ունիմք բազումք՝ 'ի հանդիսին,
Յի Ըզվըրկայից՝ըն բազմութիւն,
որ քան զթիւ՝ գերազանցին:
Որք յաղթեցին՝ չար իշխանին,
երեւելոյն՝ և անյայտին.
'Ի մարդկանէ՝ այժըմ գովին,
և յաստուծոյ՝ փառաւորին.
'Ի հանդերձեալ՝ըն պըսակին,
ւ արեգական՝ նըման ծագին:
Փոքր'ինչ էր վիշտ՝նըն զոր կրեցին,
անբաւ բարիք՝ որ պարգեւին.
Չարչարեցան՝ 'ի վայրկենին,
բայց ժառանգեն՝ զյաւիտենին:
Նըմանեսցո՛ւք՝ սուրբ վըկայիցն,
որ քառասունք՝ վերաձայնին.

Որք միաբան՝ ընթանային ,
յաղթող գնդան՝ յասպարիսին :
Մի՛ նըմանել՝ թոյլ և վատին ,
զոր բաղանի՝քըն կորուսին .
Այլ պըսակաց՝ըն տեսողին ,
իմաստախոհ՝ բանտապետին :
Հանդիսադիր՝ մերոյ մարտին , Յծ
չէ՛ ’ի ցեղից՝ հողեղինին .
Եւ ո՛չ եդաք՝ զյոյս մեր ’ի մարդ ,
մահկանացու՝ և երկրային :
Այլ զաւրագլուխ՝ըն հրեշտակաց ,
որ է յաթոռ՝ քերովբէին .
Նա՛ յարդարիչ՝ պատերազմին ,
և պարգեւիչ՝ յաղթանակին :
Ա՛ռ որ ունիմք՝ անքակտելի ,
զհաւատ և զյոյս՝ առ սիրելին .
Ցորմէ կըրկին՝ մեզ պարգեւի ,
թագ և պըսակ՝ բրաբիոնին :
Զի թէ յաղթեմք՝ և պըսակիմք ,
ւանուն բարեաց՝ մեզ քարոզին .
Եւ թէ մարմնով՝ յաղթահարիմք ,
լուսով հոգիք՝ մեր փայլեսցին .
Ընդ արդարոց՝ըն դասեսցուք ,
յարքայութեան՝ հաւըրըն վերին ,

Յանզրաւական՝ հարսնարանին ,
զոր խոստացեալ՝ է յաղթողին :
ճկ .Օք թէ աստուստ՝ տարագրեսցուք ,
որ հայրենեաց՝ կոչէ գետին ·
Որ թէ պայծառ՝ յերևելիս ,
և վայելուչ՝ աչաց բերին :
Այլ փոխանակ՝ անցաւորիս ,
ժառանգեսցուք՝ զանանց բարին ·
'Ի փափկութեան՝ լուսոյ դրախտին ,
յորմէ անկաւ՝ մարդն առաջին ·
Յանմահութեան՝ անախտ վայրին ,
'ի սեփհական՝ մեր հայրենին :
Եւ փոխանակ՝ այս քաղաքի ,
որ է շինուած՝ սա մարդկային ,
Ունիմք շինուած՝ մեք յաստուծոյ ,
անձեռագործ՝ և երկնային .
Որոյ հիման՝ ճարտարապետ ,
ա՛ջ արարչին՝ է անեղին ·
Այն որ կամար՝ կապեաց զերկին ,
կացոյց 'ի նմա՝ զդասըս վերին ·
Ա՛յն որ զերկիր՝ըս հաստատեաց ,
և զըրս 'ի սմա՝ մինչ ոչ գոյին :
ճհ Արդ մեք 'ի նա՝ հաստատեցաք ,
զյոյս և զհաւատ՝ և զերկոսին ·

Զի թէ կամի՝ և կեցուսցէ,
 փառք և պատիւ՝ տացուք նըմին.
Ապա թէ ոչ՝ զայս ախորժէ,
 այլ տայ 'ի ձեռս՝ անաւըրինին,
Ցայս առաւել՝ մեք գոհասցուք,
 զի տնաւըրինէ՝ մեզ ըղքարին:
Որպէս ըղձայր՝ զթած խըրքատէ,
 վասըն մեղաց՝ մեր որ լինին.
Բայց և դարձեալ՝ մըխիթարէ,
 որպէս բնութիւն՝ է այս նորին:
Եւ ըզտըղայս՝ բաբիլոնին,
 մատնէ զաւըրաց՝ քըրիստոնէին.
Կալով զոտից՝ մանկանց նորին,
 և հարկանել՝ պինդ ըղքարին.
Որ քակեցէք՝ այժմ ասացին,
 և մինչ 'ի հիմ՛ըն հասուցին,
Քանդեցին՝ աւերեցին,
 և 'ի հիմանց՝ տապալեցին.
Զերդ վաղափուըն՝ աշտարակին, յձ
 զոր շինեցին՝ դարձեալ նոքին,
Եւ կամ դըժոխքն՝ անդըընդային,
 զոր աւերեաց՝ աջ հըզաւըրին:
Արդ նոքա զայս՝ և այսպիսիս,
 միշտ առ միմեան՝ըս գոչէին.

Իբր ատամունք՝ըն վարազին ,
բանիւ զիրեար՝ըս սըրէին .
Քաջալերէր՝ հայրըն զորդին ,
ւորդիքն 'ի մարտ՝ պատրաստէին .
Մի՛շտ հանապազ՝ քարոզէին ,
հրապարակաւ՝ և առ տընին :
Ա՛նդ ո՛չ իշխան՝ էր պատուական ,
և ո՛չ կըրտսեր՝ 'ի տեղ վերջին ,
Այլ միաբան՝ և հաւասար ,
միախորհուրդ՝ ամենեքին .
Եպիսկոպոսք՝ և քահանայք ,
իւրաքանչիւր՝ դասք յիւր ցեղին .
Ա՛նդըրդուելի՝ կա՛լ 'ի մարտին ,
արիաբար՝ ընդ դէմ չարին :
յՂ Մի՛ երկընչէլ՝ 'ի սրոյ նոցին ,
որ սպանանէ՝ միայն զմարմին .
Այլ յա՛յնմանէ՝ զարհուրեսցուք ,
որ զեհենին՝ տայ զերկոսին :
Միայն ըզնա՝ մեք սիրեսցո՛ւք ,
որ պըսակէ՝ զիւր սիրելին .
Համբերութեամբ՝ ստասցո՛ւք զոգին ,
վա՛րձս ընկալցուք՝ զանպատմելին :

~~~~~~
~~~~~~

Արդ երբև զայս՝ բարբառէին ,
և քաջալերս՝ միմեանց տային ·
Ա,հա հասցեն՝ մեզ յաւգնութիւն ,
քաջ և արի՝ զաւրքըն վերին ·
Եւ ՚ի Թիկու՝նըս հայէին ,
ընդ Ճանապարհ՝սըն դիտէին ,
՚Ի գիշերի՝ և ՚ի տունջեան ,
միշտ զալըստեանն՝ ակն ունէին :
Թէպէտ և ո՛չ՝ ժամանէին ,
որոց նոքայն՝ ըսպասէին ·
Քանզի յամեալ՝ յապաղեցին ,
որ ընդ հանուր՝ կողմանս էին ,
Գալ յաւգնութիւն՝ իմոյ կամսին , Ն
Երկըրպագուք՝ սըրբոյ խաչին :
Վասն այնորիկ՝ յո՛յժ փութային ,
կողմանք դասուց՝ հակառակին ·
.Օ,ի գործ ծածուկ՝ մեքենային ,
փո՛յթ և արագ՝ վըճարեսցին :
Քանզի գիտէր՝ չա՛րն ՚ի յինքեան ,
ո՛չ դիմամարտ՝ լինել նոցին ·
Այլ թէ կանխեալ՝ ժամանէին ,
յանդըգերծ տեղիս՝ըն փախչէին:
Բայց զի մեղաց՝ըն բազմութիւն ,
որ միշտ առ իս՝ յաճախէին ,

Օ՛ այն որ բարեաց՝ մատունքն էին ,
զամենեսեան՝ խափանէին :
Իսկ ըղձարիս՝ մերձեցուցին ,
մինչև 'ի գլուխ՝ զայն հասուցին :
Օ՛ որ աստանաւր՝ սիրտ իմ ճըմլէ ,
ւերիկամունք՝ըս գալարին ·
Ցա՛ւ հարկանի՝ յորովայնիս ,
միտք և հոգիս՝ իմ այլայլին .
նժ Մինչ զեռ յիշեմ՝ զաւրն ահագին ,
և զառաւաւտըն մըթագին ,
Օ՛ անլոյս ցերե՛կըն խաւարին ,
որ լուսացաւ՝ նըսեմ խորին :
Յորժամ ըզհու՝րըն սողումին ,
ներքուստ 'ի վեր՝ բորբոքէին ·
Ո՛չ 'ի վերուստ՝ անձրևածին ,
այլ 'ի ստորին՝ըս փորածին .
Յա՛յնժամ պարիսպ՝ ամրականին ,
վերուստ 'ի վայր՝ կործանէին ,
Եւ 'ի հիմանց՝ տապալէին ,
մ՛ուտ թըշնամեաց՝ըն գործէին :
Այլ քաջ-արիքն՝ ո՛չ կասէին ;
ւո՛չ 'ի փախուստ՝ ինչ դառնային .
Բայց առ միմեան՝ըս ձայն տային ,
քաջալերեալ՝ յորդորէին .

Արփաբար՝ հաստատէին ,
•դինուք յանկած՝ըն պարըրալին·
Դիմել 'ի մահ՝ խրախուսէին ,
ո՛չ դանդաղել՝ 'ի սրոյ նոցին :
Այլ որպէս հաւտ՝ հովուապետին , Նի
յաղն երկնային՝ գըրոց տային ·
Քահանայք՝ եփուտաւորք ,
սաւսերաւոր՝ըք լինէին ·
Եպիսկոպոսք՝ըն պատուականք ,
'ի ձեռս առեալ՝ գնըշան խաչին ,
Հօտս եղբար՝ըք սիրելիք ,
մի՛ զարհուրիք՝ առձայնէին ·
Օ մահ ընտրեցէք՝ զուք քաջութեամբ ,
որ քան ըղկեանս՝ է գովելին ·
Ահա հասեալ՝ է մարտադիրն ,
և յաղթանակն՝ է՛ 'ի ձեռին ·
Եւ պարսակէ՝ զքաջն և զարին ,
որ յայսմ աւուր՝ մեռանիցին :
Իսկ չարութեան՝ արբանեկին ,
զդատարկն վառեալ՝ զաւրականին ,
Հրատարակէր՝ 'ի լուր նոցին ,
արկանեալ՝ յայնըմ մարտին :
Ցորմէ պարգևուք՝ խոստանային ,
և մեծութիւն՝ յայժ երկրային ·

Նա և պատիժ՝ պատուհասին ,
սպառնայր ածել՝ Թո՛յլ և վատին :
Յա՛յնժամ զինեալ՝ըք լինէին ,
գունդըք զաւրաց՝ անաստուածին ,
Գաղանաբար՝ յարձակէին ,
մերձեալ 'ի մաւտ՝ըն պարըսպին :
Իսկ զաւրականքն՝ անյաղթելը ,
որ անդանաւր՝ հասեալ կային ,
Ընդ դիմամարտ՝ գոլով նոցին ,
ըզհակառակ՝սըն վանէին ,
Եւ որպէս փայտ՝ ինչ յանտառին ,
յանաւրինաց՝ կոտորէին .
Մինչ զի զահի՝ հարկանէին ,
և յետս ընդդէմ՝ նահանջէին :
Բայց երանի՝ զանձնէ իմմէ ,
Թէ բանք իմ աստ՝ դադարէին .
Եւ ոչ յառաջ՝ ա՛յլ խաղային ,
Ճըմլեալ ըզսիրտ՝ըս լըսողին :
Աւաղ չէ՜ աւգուտ՝յայսցանէ ինձ ,
բանիւ լըռել՝ զորս 'ի կարգին ,
Իբրու արդեամբք՝ ընդ իս անցին ,
չարիքս այս մեծ՝ ւանհընարին :
Քանզի յորժամ՝ ո՛չ կարացին ,
յաղթել քաջացն՝ որ անդ կային .

Յայնժամ վերազն՝ անդրնդային,
կոչեաց զռամիկ՝ զաւրականին ·
՚Ի սուր յաւար՝ ու ՚ի գերութիւն,
ասաց առնել՝ զամենեսին :
Եւ զայն լուեալ՝ արաբացին,
անթիւ զաւրաց՝ բարբարոսին,
Իբրև զեռանդ՝ պլտուտկէին,
շրջման առեալ՝ շուրջ քաղաքին ·
Ջեռմամբ յեռեալ՝ տագնապէին,
մի՛ առ միով՝ արշաւէին ·
Փողս և քոսեր՝ըս գոչէին,
երբև յամպոց՝ որոտային ·
Զայնս ահագին՝ըս հընչէին,
մինչ զի զերկիր՝ դըղըրդէին ·
Որ վատասիրտ՝քըն վախէին,
քաջք և արիք՝ խիզախէին ·
Ոմանք ՚ի մահ՝ըն դիմէին, նծ
ւ այլք ՚ի յահէն՝ մեռանէին :
Այլ զի նուաղ՝ ժողովէին,
ւ ո՛չ բաւական՝ըս պարըսպին,
Եւ այն դատեալ՝ վաստակէին,
՚ի յանդադար՝ պատերազմին ·
Քանզի տեսեալ՝ ժուժկալեցին,
երբ ամսաւրեայ՝ գոլով մարտին :

Վասն մայրիկ՝ տեղ ինչ մասին,
՚ի պահպանաց՝ Թափուր գըտին.
Ցորում ելեալ՝ բարձրանային,
սակաւք ոմանք՝ յաշտարակին:
Իսկ ժողովուրդ՝ըք քաղաքին,
զայն ինչ տեսեալ՝ զարհուրէին.
Ձայնըս գուժի՛՝ արկանէին,
և ՚ի փախուստ՝ըն դառնային:
Եւ ապա զի՞նչ՝ կամ ո՛րպիսի,
անդ տեսութիւն՝ դըժուարելի:
Քանզի խուժան՝ անաւրինին,
երբ ըզփախուստն՝ըն զայն տեսին,
նկ Սուսերամերկ՝ըք լինէին,
մէջ քաղաքին՝ յարձակէին:
Եւ ժողովոց՝ըն բազմութիւն,
մի ըզ միոյ՝ հետ կասէին.
Որք առաջին՝ ընթանային,
մինչև ՚ի դըրուն՝ըս դըղեկին:
Իսկ մարդադէմ՝քըն գազանաց,
ըզ սայրասուր՝ըն քամէին,
Եւ որպէս զայլք՝ ՚ի հաւտ գառանց,
՚ի մէջ նոցունց՝ անկանէին.
Առ հասարակ՝ կոտորէին,
արեան վըտակ՝ըք հոսէին.

Օ՛ երիտասարդս՝ և ըզ մանկութին,
անխնայապէս՝ խողխողէին :
Յալիս ծերոցն՝ ո՛չ գըթային,
և ո՛չ ՚ի հասակն՝ըն տըղային ·
Ո՛չ ՚ի պատիւ՝ քահանային,
ո՛չ յաշտիճան՝ հայրապետին ·
Մինչ զի արեան՝ցըն ճապաղին,
ծերոցն ալիք՝ ներկանէին :
Եւ քահանայք՝ըն խորհըրդին, նՀ
՚ի սուրբ արեան՝ կենարարին,
Օ՛ արիւնս իւրեանց՝ յայն խառնէին,
և ընդ նոսին՝ թաթաւէին :
Քանզի արեանն՝ էր ծարաւի,
և արբեցաւ՝ սուրըն նորին ·
Առիւծ գոչեաց՝ ՚ի յանտառին,
և գիշախանձ՝ արջն ՚ի բային :
Բայց ըզհանդէպն՝ ողորմագին,
որ դառնագոյն՝ է լըսողին,
Չէ՛ բաւական՝ բան ասողին,
պատմել զաղէտ՝ըն սաստկագին :
Քանզի յորժամ՝ գայլքըն մըտին,
և շունքըն լերբք՝ պաշարեցին,
Օ՛ հաւտ ոչխարաց՝ըն ցրըւեցին,
զանմեղ գառինս՝ պատառեցին :

Ցա՛յնմ երկնուղէ՝ զարհուրէին ,
բարձր ՚ի դըղեակ՝ըն զիմէին :
Իսկ չարութեան՝ արբանեկին ,
որ պահապան՝ էր կըլային ,
ՆՃ Ըզդըրունս ընդդէմ՝ եղեալ նոցին ,
ո՛չ թողացոյց՝ըզմուտ բերդին :
Եւ բազմութիւն՝ փախըստէին ,
յահէ սըրոյն՝ խուսափէին .
Ամենեքեան՝ ա՛նդ փութային ,
երբ յապաւէն՝ անկանէին .
Մի ըզմիով՝ անցանէին ,
առ ՚ի ճեպոյն՝ տագնապէին :
Եւ զի փակեալ՝ մուտն առաջին ,
և թըշնամեաց՝ սուրըն վերջին ,
Ցա՛յնժամ առ դուր՝սըն կոտէին ,
երբև ըպշեղջս՝ անհընարին .
Կամ յաւրինակ՝ մայրեաց փայտին ,
միմեանց վերայ՝ դիզանէին .
Ա՛րք և կանայք՝ ծերք և տըղայք ,
մանկունք և ամեն՝ չափ հասակին :
Դըստերքն ՚ի մարց՝ լային գըրկին ,
և ընդ լալոյն՝ նուաղէին .
Մարքն ըզտըղայսն՝ընդ գըրկէին ,
ւ ՚ի միասին՝ մեռանէին :

Հարքն ընդ որդւոց՝ տառապէին, Նղ.
Թէ փրկութեան՝ հասանիցեն ·
Որդիքն ընդ հարց՝ըն ջանային,
զի ՚ի յանդորր՝ ելանիցեն :
Այլ զի չէր ոք՝ նըպաստ նոցին,
ոչ ձեռընտու՝ ՚ի յայն վայրին ·
Միայն յերկինս՝ ամբառնային,
զաչըս մըտաց՝ կողկողագին :
Եւ զի խաւսել՝ ոչ կարէին,
յոգոց հանել՝ըն հեղձնուին ·
Եղբայր եղբաւր՝ ոչ աւգնէին,
և ոչ ՚ի քոր՝սըն գըթային ·
Թէ և կարի՝ յոյժ սիրէին,
ւաղէկոտոր՝ իսկ լինէին ·
Բայց փրկութեան՝ ձեռն ոչ տային,
զի և շարժել՝ ոչ կարէին :
Իւրաքանչիւր՝ յիւրում տեղւոջ,
ուր պատահեացն՝ անկանէին ·
Եւ ՚ի շընչոյն՝ նուազութեանց,
հեղձամըղձուկ՝ անդ լինէին :
Իսկ փախըստեայքն՝ ըշտապէին, Շ
յահէ սըրոյն՝ զարհուրագին ·
Եւ յանկելոց՝ դիակուտին,
կէսքն ընդ ոտիւք՝ ընթանային ·

Որպէս 'ի գետ՝ կամ 'ի ծովը,
վերայ գըլխոց՝ըն լողային :
Բայց այլազգեաց՝ըն բազմութիւն,
որ սուսերաւքն՝ 'ի հետ գային,
Իբրև գազան՝ըս վայրենիս,
'ի մէջ հաւտիցն՝ անկանէին ·
Իւրաքանչիւր՝ աջ ըստ մըտին,
առ յընտրութիւն՝ պարապէին :
Քանզի զոման՝ըս գերէին,
որ գեղեցիկ՝ դիմաւքն էին,
Առ յուստերաց՝ և դըստերաց,
ընդ որ ինքեան՝քըն հաճէին ·
Իսկ ըզ լըցեալ՝սըն հասակաւ,
զայն չարաչար՝ խողխողէին :
Եւ զխեղճելոց՝ զիակունսն,
մարմինսն արտաք՝ըս քարշէին ·
ժէ Զորս զընկնէին՝ կողոպտէին,
մերկ փայտատակ՝ զայն թողուին :
Ո՛չ պատանաւք՝ զոք պատէին,
ո՛չ վերարկուս՝ արկանէին ·
Աւրինաւոր՝ ո՛չ թաղէին,
և ո՛չ կոծովք՝ յուղարկէին :
Անդ ո՛չ դպիր երգ՝ քահանայի,
և ո՛չ հընչումն՝ աստուածային ·

Ո՛չ պաշտաւնեայք՝ սաղմոսէին,
ո՛չ սարկաւագք՝ ընթեռնուին:
Թէպէտ յերկինս՝ հոգիքն ելին,
և յաստուծոյ՝ են 'ի ձեռին:
Որոց անուանք՝ըն գրոշմէին,
'ի դրպրութեան՝ կենաց գրքին·
Սակայն մարմինքն՝ անպատուէին,
զի յապաժոյժ՝ թաւալէին:
Զորս ընդ քարին՝սըն հոսէին,
երբև ըրդէշ՝ անասնային·
'Ի գազանաց՝ գիշատէին,
և կերակուր՝ շանց լինէին:
Զորմէ պատգամք՝ մարգարէին, շէ
յառաջագոյն՝ գուշակեցին·
Յերուսաղէմ՝ խաւսեալ բանին,
որք և առ իս՝ կատարէին.
Զարիւն սրբոցն՝ յերկրի հեղին,
որպէս հոսանք՝ ջուրց վտակին·
Ըզ քահանայն՝ և ժողովուրդն,
առ հասարակ՝ խողխողէին:
Ձորից անդնդաց՝ քրիստոնէից,
գըլուխք հատուց՝ որ աստ կային·
Դաղմատեանըն՝ և թորգոմին,
յունականըն՝ և ասորին.

Առ հասարակ՝ զանձինս եդին,
մինչև 'ի մահ՝ զուն գործեցին,
Քա՛ջ և արի՝ հաւատապետին,
գործովք բարեաց՝ նըմանեցին :
Ո՛չ վարձկանաց՝ նըման փախեան,
'ի տեսլենէ՝ չար գազանին.
Եւ ո՛չ զհաւ՝ տըն մատնեցին,
և կամ զանձինս՝ ապրեցուցին.
ՀԸ Այլ քաջապէս՝ հարկանէին,
ընդդէմ գայլոյն՝ պատառողին :
Մինչ զի 'ի նմին՝ պատերազմին,
արեացեալ՝ 'ի հանդիսին,
Հռովմայեցւոց՝ հաւատապետին,
զանձն իւր 'ի մահ՝ ետ ընդ հաւտին.
Եհե՛ղ զարիւն՝ իւր ընդ նոսին,
նըման յուղա՝ մակաբէին.
Եղէազարն՝ այն առաջին,
որ քահանայն՝ էր ըստւերին.
Բարեբարոյն՝ ըստ զովեստին,
և ծերունին՝ ըստ հասակին :
Նա և զհայոց՝ ազգաց ցեղին,
եպիսկոպոս՝ ընտրեալ նոցին.
Թէպէտ մահու՝ ոչ մատնէին,
ըստ խընամոց՝ բարերարին.

Զայն որ պահեաց՝ ՚ի մէջ կուսին,
որպէս զՅովնան ՚ի փոր կիտին ·
Սակայն յոքունց՝ ՚ի հանդիսին,
յաղթող գրտաւ՝ յասպարիսին ·
Անձամբ տուեալ՝ զանձն իւր ՚ի մահ, շէն
եբր յաւրինակ՝ հաւատապետին ։
Բայց զի հընար՝ ո՛չ լինիցին,
զոր աստանաւր՝ կատարեցին,
Մի ըստ միոյ՝ գրել բանիւ,
զիւրաքանչիւր՝ գովեստ անձին ։
Զի այս անկար՝ շարագրողին,
և անհընար՝ բանաւորին ·
Ո՛չ թէ տըկար՝ միայն անձին,
և անտեղեակ՝ քերեալ տաղին,
Այլ և նոցունց՝ ներ արհեստին,
որ պանծալիք՝ գոլով սովին ։

~~~~~~~~

Բայց մեք ՚ի կարգ՝ անդր առաջին,
դարձեալ սկըսցուք՝ աստ վերըստին ·
Մինչև յանկեալ՝ վախճանեսցի,
պատմեալ աղէտս՝ ողորմագին ։
Քանզի երբև՝ շունըք հասին,
և ցուլըք գէրք՝ պաշարեցին,
~~~~~~~~

Անմեղ գառանց՝ 'ի հետ մրտին,
խեղդմամբ և սրով՝ վախճանէին :
ՇԺ Որք յայնմանէ՝ զերծանէին,
սակաւք 'ի դղեակն՝ ամրանային .
Յոր հուպ եկեալ՝ բռնաւորին,
զայս տեսլով՝ բա՛ն առ նոսին ·
Իմո՞ւմ թէ ոչ՝ լսէք բանին,
և հնազանդեալ՝ տայք 'ի ձեռին,
Լինէք և դուք՝ նըման սոցին,
անկեալք գէշ՝ գազանային :
Բայց նոքա ո՛չ՝ զանգիտէին,
և տալ 'ի յանձն՝ ո՛չ առնուին,
Այլ քաջապէս՝ յո՛յժ պընդէին,
արիաբար՝ հաստատէին :
Սակայն զի ո՛չ՝ յառաջագոյն,
անդ կերակուրք համբարեցին,
Եւ ո՛չ ըզջուրսն՝ որ 'ի ներքուստ,
վերաբերեալ՝ պատրաստէին :
Նաև զաւրաց՝ քրիստոնէին,
որք ժողովեալք՝ 'ի միասին,
Զարմա՛ր տեղեակ՝ ոչ ըզնոսին,
Թէ ահա մերձ՝ գա՛ն և հըղին :
ՇԿ Վասն այսորիկ՝ ո՛չ կարացին,
տեւել յերկար՝ ընդդէմ չարին,

Այլ յետ աւուրց՝ ինչ պայմանին,
տուեալ արտաքս՝ ելանէին:
Իսկ զիւարնակ՝ նենգաւորին,
և խորամանկ՝ չար խաբողին,
Զուխտըն սրտեալ՝ զոր եդ նոսին,
որպէս բնութիւն՝ էր այս նորին:
Ընտրէր ըղձասս՝ զաւրականին,
յորոց ունէր՝ խոց 'ի սրտին.
Տայր նըշաւակ՝ կանգնեալ յոտին,
նետիւք խոցէր՝ իւրով ձեռին:
Զոր յաղթութիւն՝ յապագային,
մեծ վարկանէր՝ իւրոյ անձին.
Նա և վարձուց՝ փոխարինին,
ըստ ժամտագործ՝ աւրինադրին:
Զինքըն կարծէր՝ ողորմելին,
վըրէժխընդիր՝ երկնաւորին.
Որում նուէր՝ աստուածային,
մատուցանէր՝ զարիւն նոցին.
Որպէս և բան՝ըն տէրունին,
յառաջագոյն՝ գուշակեցին: շն
Այդ երբև զայս՝ կատարեցին,
զորս 'ի շատէն՝ փոքր ասացին,
Ըզգերելոցն՝ որ գերեցին,
և զորս աբեամբ՝ սրով ըսպանին.

Օ ջինջ և ըղձալի՝ կողոպտակէին,
զհարց և զհաւուց՝ զորս պահէին.
Օ ոսկիակուռ՝ զարդ կանանցին,
և զգաստաւորան՝ հանդերձանին.
Օ արծաթեղէն՝ զոսկեղէնին,
զանաւթ սըրբոյ՝ պատարագին.
Օ ուռնակ բուրման՝ անուշ խընկին,
և զհընչեցող՝ քըրշոցանին.
Ըզ վարագոյր՝սըն խորանին,
և զհանդերձան՝ըս սեղանին:
Օ քահանայից՝ զարդ հանդերձին,
զհայրապետաց՝ պատմուճանին.
Ըզ պատուական՝ նափորտանին,
զեմիփորոն՝ սուրբ խորհրդին:
ճձ Օ ոսկէնըկար՝ տիպն ուրարին,
այն որ զուսովք՝ըն պատէին.
Օ ականակապ՝ քառակուսին,
որ էր նըման՝ սուրբ վակասին.
Օ բազմագունեան՝ գործ հրաշալին,
այն որ 'ի քղանց՝ըս հանդերձին.
Եւ զայլըն ամէն՝ որ ըստ կարգին,
որոց ողբումն՝ է յիշելին:
Որովք 'ի տաւնըս տէրունին,
վայելչապէս՝ զարդարէին.

Իբրեւ փեսայ՝ յառագաստին ,
կամ որպէս հարսն՝ ՚ի տաճարին :
Քահանայք՝ սարկաւագունք ,
կարգ ըստ կարգի՝ պար առնուին ,
Եւ հայրապետն՝ այն ՚ի միջի ,
որպէս գլուխ՝ բոլոր հաւտին ,
Շրջան առեալ՝ յեկեղեցին ,
մեղմաւրէնակ՝ անդ ձեմէին :
Իսկ ժողովոց՝ըն բազմութիւն ,
արք և կանայք՝ որ անդ կային .
Ըզհետ հետոց՝ ընթանային , շղ
որպէս և հաւտն՝ ըզկնի հովուին .
՚Ի մի բերան՝ փառաւորէին ,
զերգս ՚ի բարձունս՝ առաքէին .
Ընդ անմարմնո՝ցըն սրովբէից ,
զերեք սրբեան՝ըն հընչէին ,
Զերրորդութիւն՝ըն գովէին ,
զմի տէրութիւն՝ դաւանէին :
Արդ փոխանակ՝ այսր ամենի ,
դո՛ւք լուարուք՝ զի՞նչ լինիցի .
Կամ դառնաբեր՝ պտուղ չարին ,
զո՛րս ընդ որոց՝ փոխարկեցին :
Զի հեթանոսքն՝ իբրեւ մրտին ,
և զիս արեամբ՝ զետով լցին .

Օ՛ իմ գեղեցիկ՝ ծընեալ զորդիսն ,
մօտ ՚ի գրկիս՝ խողխողեցին :
Յայնժամ պղծեալ՝ գարշապարաւ ,
ըզսրբութիւնս՝ իմ կոխեցին ,
Ըզ սուրբ տաճար՝ըն պղծեցին ,
և ըզ սեղանս՝ կործանեցին :
Ո Ու զտէրունեան՝ նըշան խաչին ,
ոտից կոխան՝ զայն առնէին ․․
Ու ըզպատկերս՝ աստուածային ,
մարմնացելոյ՝ հաւրըն բանին ,
Ու զսրբուհւոյ՝ ա̃ծածնին ,
և զայլ սրբոցն՝ որ ըստ կարգին ․
Կոխէին՝ ու անարգէին ,
հայհոյութեան՝ բան ասէին :
Իսկ առաջնորդք՝ չարեաց նոցին ,
որոց մամուլս՝ անուանէին ,
՚Ի բարձրութիւնսն՝ ելանէին ,
ուր ըզ զանգակ՝սըն հընչէին ․
Ձայնիւ մեծաւ՝ անդ գոչէին ,
աղաղակաւ՝ զա՛յս ասէին ․
Թէ այսաւր քեզ՝ մեծ աւետիք ,
մա՛հմէտ պատգամդ՝ երկնաւորին ․
Դարձեալ առաք՝ զոր կորուսաք ,
զքո սեփհական՝ զտուն և զտեղին ․

Յա՛յս մոլորեալ՝ ժողովրդոցս ,
երկրըպագուաց՝ անշունչ քարին ·
Օ՜ որոց արեամբ՝ լըցաք զերկիր , ոժ
ըստ հրամանի՝ քում դիւրանին :
Ահա և քե՛զ՝ ձայն աւետեաց ,
մեծըդ մաքքա՛յ՝ տուն մահմէտին ·
Յորում է յոյսն՝ 'ի սեւ քարին ,
և հետեւումն՝ըն մի ոտին :
Օ՜ է այժմ առ քեզ՝ փոփոխեսցուք ,
զերկրըպագուսն՝ արեւելին ,
Ըզմոլորեալսն՝ զհետ խաչին ,
և զպաշտամանեայ՝սըն յիսուսին :
Օ՜ ա՛յս ասելով՝ խրախճանային ,
երգս և խըընճոյս՝ յաւրինէին ·
Ծա՛փըս ծափի՝ հարկանէին ,
ոտիւք վազեալ՝ կաքաւէին :
Այլք 'ի շարին՝ արբանեկաց ,
որոց ղազիքն՝ անուանէին ,
Իբրև ըզշուն՝ըս կատաղիս ,
յորսոց վերա՛յ՝ յարձակէին ·
Օ՜ արիւնս առեալ՝ զըսպանելոցն ,
զանձինս իւրեանց՝ ածանէին ·
Եւ զորովայն՝սըն հերձէին , ոի
զլեարդսն հանեալ՝ խածատէին ·

Եւ ըզգըլուխ՝սըն քերթէին ,
ւ՚ի խորտասան՝ զայն տանէին ,
Օ՛է ՚ի նոցունց՝ վարձս ընկալցէին ·
ընդ սպանելոց՝ըն համարէին :
Իսկ անաւրէն՝ պիղծ վիշապին ,
և չարաթոյն՝ բըռնաւորին ·
Այն որ նըման՝ գոլով նեռին ,
եղջիւրամբարձ՝ դէմ արարչին ,
Արհամարհեաց՝ զլարկ տանջարին ,
զաստուածընկալըն՝ և զհրաշալին ·
Օ՛անուանակիր՝ըն յովհաննու ,
ըզ մըկըրտիչ՝ մարգարէին ·
Կամ զաւետեաց՝ քարոզ բանին ,
իբր համանուն՝ զոյլ երկոքին :
Եմուտ անդ զօ՛րըն՝ և պղծալին ,
արիւնահեղըն՝ և նենգով լըին ·
Հանդերձ զաւրաւքըն՝ որ ընդ նըմին ·
պաշտաւնէիւ՝քըն մահձետին :
ոլ̄· Եւ՚ի սեղանն՝ աստուածային ,
յոր միշտ զենոյր՝ ա՛ծորդին ,
Հա՛րձըս նըստոյց՝ երգել ՚ի նմին ,
և գինարբուս՝ ըստ հերոդին :
Ա՛նդ ուր հրեշտակ՝քըն հընչէին ,
և սերովբէք՝ սաւսանէին ,

Յոր քերովբէքն՝ ակումբ կային,
և պետութիւնք՝ըն սարսէին.
Յորժամ երկնից՝ թագաւորին,
գալուստ լինէր՝ յեկեղեցին.
Եւ անարատ՝ և սուրբ գառին,
հեղոյր արիւնն՝ ՚ի սեղանին.
՚Ի հաշտութիւն՝ հաւրըն վերին,
ւ ՚ի քաւութիւն՝ մեղաւորին:
Բայց ո՛չ միայն՝ անդ առնէին,
զանարգութիւնսն՝ որ ասացին,
Այլ յամենայն՝ խորանս սրբոց,
որք աստանաւր՝ շինեալ կային:
Յիւրաքանչիւրս՝ մըտանէին,
ըզսրբութիւն՝սըն պըղծէին.
Գո՛րծ գարշութեան՝ անդ գործէին, ոխ
զոր ուսուցեալ՝ էր մահմէտին.
Օ որ և խաւսեսըն՝ է աղտեղի,
լըսելըն գո՛րշ՝ սըրբասիրի:
Օ ոմանս ուղտոց՝ տուն առնէին,
և զայլս էշոց՝ ւ երիվարին.
Յոմանս ինքեանք՝ բընակէին,
որ են վատթար՝ քան զանբանին:
Արդ երբև զայս՝ կատարեցին,
ըստ թոյլ տալոյ՝ բարերարին.

Օ՜ որ համառաւտ՝ և ծայրաքաղ,
փո՛քր ինչ ցուցաք՝ զաղէտս իրին :
Յայնժամ զգերեալ՝ոյն բաղխէին,
մի առ միոյ՝ պարգևս տային,
'Ի հեռաւորսն՝ արձակէին,
զգեղեցկատիպսն՝ որ ընտրէին .
Բաբելացւոց՝ Թագաւորին,
ւ 'ի խորասան՝ մեծ սուլտանին,
Սնոտի՛ մոլար՝ խալիփային,
կո՛յր և կուրաց՝ առաջնորդին :
ոծ Որ է յաթոռ՝ին մահմետին,
սո՛ւտ մարգարէ՝ խաբեբային .
Խաւարելոցն՝ աւրինադրին,
չարեա՛ց մեղաց՝ ուսուցողին :
Ա՛յն որ գործէ՝ զաղտեղութիւն,
զանասելին՝ մարդոյ լեզուին .
Ուսուցանէ՝ իւր ժողովին,
գործել ընդոյն՝ ըզպըղծալին :
Եւ քաւութիւն՝ մեղաց նոցին,
աւրինադրէ՝ ըզ գըզուելին,
Ողողանել՝ ջըրով գետին,
մաքրել միայն զերեսելին .
Որով և կէտք՝ որ 'ի ծովին,
առաւելուն՝ քան ըզնոսին .

Իսկ ըղձողույն՝ վայելչութիւն ,
մեղաւք թաղեն՝ միշտ 'ի տըղմին :
Արդ այսպիսոյս՝ լո՛ւր աւետեաց ,
գըրոյլ հընչէր՝ յականջս նորին ,
Թէ աւետի՛ք՝ քեզ խընդալեց ,
ահա՛ զպաշտաւնք՝ բարձի խաչին ·
Եւ ըղքաղաքս՝ ամուր նոցին , ոկ
տապալեցի՝ հրման յարեւին :
Բայց ա՛յս ըսկզբըն՝ իմոյ մարտին ,
որ վասըն քոյդ՝ է հաւատին ·
Եւ ըռասուլ՝ քոյոյ նախնոյն ,
պատգամաւոր՝ փըղամբարին :
Այլ դու յեշեա՛՝ զէս յուրբաթին ,
'ի յաղաւթեըն՝ 'ի մըզքըթին ·
Օի ես գյեսայ՝ վաղվաղակի ,
յերկրէ բառնամ՝ իւրըն ազգովին .
Եւ սատակե՛մ՝ զամենեսին ,
որք դաւանեն՝ զա̃ծ որդին :



Արդ զայս գըրէր՝ ա՛նդըր 'ի հեուին ,
ւ ինքըն փըքայր՝ օդուով շարին ,
Խորոխտա՛յր նըման՝ ըռափսակին ,
խորհէր ջընջել՝ զազգս որ կային :

Ո՛չ դիտելով՝ զայս յիմարէն ,
ուժն ըմբռնաւ՝ ածեալ կուրէն ·
Թէ ոչ ուժով՝ իւրոյ բազկին ,
կամ զաւրութեամբ՝ իւր պինդ կրնակին ,
ոչ Եղև զաւահա՝ ամնաւլ նըմին ,
մատնել ’ի սուր՝ ու’ի գերութիւն .
Այլ իմ մեղա՝ցըն բազմութիւն ,
և յաճախել՝ գործոց չարին ,
Մատնեաց ’ի ձեռս՝ անաւրինին ,
խիստ ւապըստամբ՝ բըռնաւորին :
Որպէս երբեմ՝ըն վաղագոյն ,
սոյն այս լինէք՝ իսրայէլին ·
Պատուիրելով՝ տեառըն նոցին ,
’ի ձեռըն սուրբ՝ մարգարէին ·
Թէ ախորժէք՝ և լըսէք ինձ ,
դուք ժառանգէք՝ ըզբարութիւն ·
Ապա թէ ոչ՝ լըսել կամիք ,
զձեզ կերիցէ՝ սուր գերողին :
Դարձեա՛լ բանիւ՝ աստուածային ,
խաւսի դաւիթ՝ ’ի սաղմոսին .
Եթէ թողցեն՝ որդիքըն քո ,
զաւրէնս եղեալ՝ իմ հրամանին ,
Գաւազանաւ՝ըս բարկութեան ,
հարում ըզմե՛ղսն՝ որ գործեցին :



Իբրև յաւակ՝ ժամանակին ,
յեբրայեցւոցն՝ առնէր ազգին ,
Զա́յն որ եհան՝ յեգիպտոսէ ,
անցոյց ընդ մէջ՝ կարմիր ծովին .
Եւ զմանանայն՝ յանապատին ,
էջոյց յերկնից՝ նըման ձիւնին .
Որոց 'ի տուէ՝ ամպ հովանին ,
և սիւն հրոյ՝ լոյս գիշերին .
Եւ խոստմնայր՝ տալով նոցին ,
զորս աւետեաց՝ երկիր կոչին :
Բայց իբրև ո՛չ՝ նոքա կացին ,
յաւրէնս եղեալ՝ պատուիրանին .
Այլ զարարիչն՝ իւրեանց թողին ,
որթոյն գըլխոյ՝ երկիր պագին .
Ընդ մաղխամ՝ խառնակէին ,
և պղծութեամբ՝ զերկիր լցին .
Էարկ տապաստ՝ յանապատին ,
երդուաւ 'ի յաջ՝ իւր կենդանին .
Ե՛թէ մըտցեն՝ անդր 'ի հանգիստ ,
նոքա որ զիս՝ դառնացուցին :
Որք և յերկիր՝ըն պարգեւաց ,
մի՛ յայնցանէ՝ անդ ո՛չ մըտին ,
Այլ ջընջեցան՝ ա՛նդր 'ի վայրին ,
ոսկերքն անկան՝ յանապատին :

Թողո՛ւմ ասել՝ զապականակին ,
զոր 'ի հեղեալ՝ որդւոցն ադին ,
Վասըն չարեաց՝ գործոց նոցին ,
զոր առ խորան՝ըն գործեցին :
Յորս երեսուն՝ հազար գաւին ,
ա՛յն առ անկան՝ յիսրայէլին .
Նոյն և հեղեալ՝ քահանային ,
պատուհասեալ՝ ըեկմամբ ողին :
Հեբրայեցի՛ք՝ դարձեալ նոքին ,
որ յակովբեան՝ որդիքն էին .
Յորժամ յերկիր՝ բըղխիչ կաթին ,
ըստ աւետեաց՝ հարցըն մըտին .
Եւ ստուարացեալ՝ գիրանային ,
զուխտն առաջին՝ մովսեսային :
Օորս մարգարէք՝ըն խրատէին ,
և զգալ չարեաց՝ բողոքէին .
Չ Պատասխանիս՝ խիստ առնէին ,
և 'ի տաճար՝ըն պանծային :
Յայնժամ հոգին՝ աստուածային ,
զա՛յս բարբառէր՝ ընդդէմ նոցին .
'Ի սրբութեա՛նցս՝ իմ ըսկսանիմ ,
ածել զաւերն՝ 'ի տաճարին :
Յորս 'ի հարկէ՝ շարժեալ բարին ,
'ի դառնութիւն՝ վասըն նոցին .



Էած հասոյց՝ զքաղդէացին,
մատնեաց 'ի ձեռն՝ անաւրինին :
Զերուսաղէմ՝ քաղաքն ընտրեալ,
առին յաւար՝ և 'ի գերութիւն .
Եւ ըզտաճարն՝ ըզհրաշալին,
զայն որ շինեալ՝ Սողոմոնին :
Ըզ կեփաղեան՝ ոսկին առին,
զկազմած զարդնին՝ կողոպտեցին .
Եւ զժողովուրդ՝ըն սեփհական,
գերի առեալ՝ խաղացուցին .
'Ի հեռի՝տըս տանէին,
քաղց և ծարաւ՝ պանդըխտէին .
'Ի բաբելոնն՝ նըստեալ լային, չժ
մինչ ըզսիոնն՝ անդ յիշէին :
Եւ այլ բազում՝ են որ պատմին,
մեզ յաւրինակ՝ նախ քարոզին .
Թէ չըխնայէ՝ յիւր սիրելին,
'ի ստունզանել՝ պատուիրանին .
Այլ և խրատէ՝ նա սաստկագին,
յոյժ առաւել՝ քան զատելին :
Որպէս և հայր՝ըն զիւր որդին,
փութայ խրատել՝ և ոչ զաւտարին .
Կամ ըստ երունեան՝ սուրբ առակին,
յիւրաքանչիւր՝ըն ծառային :

Կամացըն տեառն՝ըն դիտողէն ,
և արժանի՝ գործել տուժէն ·
Ըմպէլ ասէ՝ զան բազմազէն ,
քան զայն որ ոչ՝ գիտէր ընաւէն :
Ուրեմն այս ինձ՝ պատահեցին ,
ըստ իրաւանց՝ եկին հասին ·
Քանզի լըցայ՝ գործովք չարին ,
և չարարի՝ զկամըս Նորին :
չէ Այլ հաւատոմ՝ ազգ մարդկային ,
ամենեքեան՝ որ յիս կային ·
Իւրաքանչիւր՝ յիւր հասակին ,
յանդըրդնաբար՝ մեղանչէին ·
Բարեաց գործոց հեռանային ,
և 'ի չարիս՝ըն հըպէին ·
Ծերք և մանկունք՝ արք և կանայք ,
յախտըս մեղաց՝ անկեալ կային :
Քահանայքըն՝ քարոզք բանին ,
և սպասաւորք՝ սուրբ խորհրդին ,
Անխըտրաբար՝ վարուք կէին ,
զոր չէ՛ ասել՝ պարտ գործէին ·
Ապա 'ի սուրբ՝ըն օրընութեանց ,
անմաքրապէս՝ մերձենային :
Եւ այսպիսի՝ գործովք չարեաց ,
որովք 'ի Նոյն՝ անզեղջ էին ·



Զբարեբոյժին՝ զկոյն իջուցին ,
 զհուրն և զծծումբ՝ ընդ սոդոմին .
Զերկրի բերան՝ անձանց բացին ,
 որպէս կորխայ՝ և դադանին :
Այլ զէ ոմանք՝ ընդդէմ բերին ,  չէ
 և աստանաւր՝ հակառակին .
Ասեն զե՛մրդ՝ երաւացի ,
 ա՛յս է վճիռ՝ դատաստանին .
Մերթէ միայն՝ մեղան նոքին ,
 քան զազգս ամեն՝ քրիստոնէին .
Զի յայսքանեաց՝ բիւր քաղաքաց ,
 պատիժ նոքա՝ միայն կրեցին :
Կամ թէ արդար՝ արդեաւք էին ,
 յորոց 'ի ձեռ՝ սըն մատնէին ,
Զանձն և ուրքն՝ առ հասարակ ,
 որ ըզսոսա՝ չարչարեցին :
Բայց լուիցէ՝ ա՛յժմ այնպիսին ,
 պատասխանիս՝ իւրում բանին .
Ո՛չ 'ի յինէն՝ բան մարդկային ,
 այլ 'ի տեառնէ՝ յոյժ գիտողին .
Որ վասն անկեալ՝ աշտարակին ,
 'ի սեղովամ՝ տասն և ութին .
Կամ ընդ զոհից՝ գալիլէին ,
 զարիւն խառնեալ՝ պիղատոսին :

չխ Մի՛թէ արդեւք՝ ասէ՛ էին,
մեղաւք միայն՝ լցեալ նոքին ·
Այսմ թէ ոչ՝ ապաշխարէք,
լինի՛ք և դուք՝ նըման նոցին :
Արդ ա՛յս 'ի խրատ՝ է մարդկային,
հանուրց բոլոր՝ բարեպաշտին ·
Ո՛չ 'ի հաւատ՝ըն ճըշմարիտ,
ունել միայն՝ վըստահութիւն,
Այլ և ըզգործս՝ արդարութեան,
միաբանել՝ ընդ հաւատին ·
Քանզի մեռեալ՝ հաւատք ասին,
որում և գործք՝ ո՛չ հետեւին :
Ապա թէ ոչ՝ յայս կըրթիցին,
որ է ուրէնք՝ աստուածային,
Իւրաքանչիւր՝ ոք առ անձին,
ա՛կնունիցին՝ պատուհասին ·
Կամ ա՛յս կենաւքս՝ որ 'ի մարմին,
կամ յանաչառ՝ մեծ ատենին :
Իսկ որ 'ի ձեռ՝սըն մատնեսցին,
հաւատացեալք՝ անհաւատին,
չծ Մի՛ յայս տըգէտ՝ըք լինիցին,
աստուածական՝ դատաստանին ·
Քանզի որպէս՝ երկըրաւորիս,
ա՛յս է հրահանգ՝ դատաւորին,

Օ ՚ի սո՛ւր ածել՝ մահապարտին ,
կամ պատուհաս՝ չարագործին ,
Ո՛չ հրամայէ՝ մեծ իշխանին ,
կամ սիրելւո՝ բարեկամին .
Այլ անարժան՝ մարդոյ վերջին ,
և դառնագոյն՝ դիմաց դահճին :
Այնպէս և յայս՝ տընաւորինին ,
առ երկնաւոր՝ Թագաւորին :
Որպէս տանջանքն՝ եգիպտոսին ,
չար հրեշտակաւք՝ լինել ասին .
Կամ կռապաշտ՝ բարբարոսաւք ,
զազգսըն տանջէր՝ զիսրայէլին :
Կամ առ ՚ի խրատ՝ զարհուրագին ,
դիւաց մատնէ՝ զոմանց մարմին .
Եւ կամ բերում՝ըն կարկըտին ,
և եղեման՝ խըստագունին :
Կամ անձրևաց՝ գա՛լ անբաւին ,    չկ
կամ անխոնաւ՝ խիստ երաշտին .
Կամ բազմութեամբ՝ յո՛յժ մարախին ,
կամ դալուկին՝ և մնինային .
Եւ կամ մըկամբ՝ զազրագունին ,
՚ի յեռացումն՝ անդաստանին :



Սէրդ մի՛ պարծիր՝ ո՛վ անըզգամ,
ժա՛նտ և ժըպիրհ՝ չարեաւք փարթամ.
Թէ զաւրաւոր՝ քոյին ձեռամբք,
զի՛ս հըննձեցեր՝ դու տարաժամ.
Կամ մահմէտին՝ քո պաշտամամբ
առեր զամուրս՝ անյաղթական.
Եւ մի՛ կարծեր՝ ամբարտաւան,
ըզքեզ հըսկայ՝ և յաղթանդամ։
Քանզի նըմա՛ն՝ ես դու մըկան,
որ սատակմամբ՝ պըրծէ ըղթան.
Կամ աղտեղէ՝ կո՛յր խըլըրդան,
որ կայ յանըրոյս՝ խաւար մըթան.
Որ 'ի ծածուկ՝ ոչ յայտնական,
փորէ՛ զգետին՝ըն քէ՛զ նըման։
չճ Կամ զե՛րդ թըռթուռ՝ զագըրաբերան,
Թունաւք դեղէ՝ ըզբուրաստան.
Եւ կամ մարախ՝ յո՛յժ բազմազան,
զհիւթըն ծըծէ՝ զդալարական։
Որ վի՛ճնչ հրամանն՝ արարչական,
կամի զտանջել՝ըն նոքա զան.
Իսկ 'ի նայել՝ըն քաղցր ակամբ,
դարձեա՛լ ջընջէ՝ զայն սատակմամբ.
Ըզմուկն ըզխլուր՝զըն միաբան,
ջըրով խեղդէ՝ խոր հեղձական.

Իսկ ըզմարտախ՝ըն յոգներամ ,
ուտէ հալէ՝ տարմին բերան :
Այսպէս և դու՝ Թը՛շուառական ,
մընայ չարեաց՝ քեզ ՚ի վախճան .
Թէ ինձ եղեր՝ մահու դարան ,
զո՛ւր փորեցեր՝ կորըստական .
Ցաւաւք լեցեր՝ զիս տըխրական ,
կենացս եղեր՝ իմ դաւաճան :
Որ զէմ տըրդայքս՝ վայելչական ,
փաղաղեցեր՝ զերդ ըղձազան .
Եւ նըստուցեր՝ զիս ՚ի մըթան , չձ̄
երբ ըզ մեռեալ՝ ՚ի գերեզման :
Արդ լո՛ւր և դու՝ փլատեա՛լ գերան ,
մերձ ՚ի յանկում՝ըն կործանման .
Քանզի ահա՛՝ Թուրքն ազգական ,
սուրըն սըրեալ՝ աստուածական .
Այն որ է բա՛ն՝ըն հայրական ,
քան զերկսայրի՝ սո՛ւր հատական ,
Պարանոցիդ՝ վերայ շողան ,
ըմպել զարիւն՝ըդ մըրմըռան :
Որ ըզբաժակ՝ըն դառնահամ ,
ինձ արբուցեր՝ զլիմարական .
Արդ ըզմըրուր՝ըն վերջնական ,
արբցես և դու՝ ըզգլորական :

Որ տարապարտ՝ մարտեար ընդ իս,
չա՛ր հատուցեր՝ բարւոյն փոխան.
Ընկա՛լ և դու՝ վրիժուց տուգան,
առցե՛ս 'ի ծոց՝ըդ եւթնական:
Առա՛կ լիցիս՝ յազգս ամենայն,
տիպ ու աւրինակ՝ տոհմի մարդկան.
ՀԴ Որք տեսանենն՝ եղո՛ւկ քեզ տան,
վա՛յ 'ի վերայ՝ վայի կարդան:
Ա՛յս այր ասեն՝ ամբարտաւան,
չարա՛ր զա՛ծ՝ իւր աւգնական.
Այլ յուսացաւ՝ յո՛յժ մարմնական,
'ի մեծութիւն՝ իւր նանրական:
Վասն այսորիկ՝ ա՛ծ իսպառ,
կործանեսցէ՝ զքե՛զ յաւիտեան,
Եւ խլեսցէ՛՝ զարմատըս քո,
յերկրէ՛ հանցէ՝ կենդանական:
Զօրք ամենայն՝ որք անիծան,
իսկըզբանէն՝ մինչ 'ի վախճան,
'Ի վիշապէն՝ որ քե՛զ նըման,
և 'ի յորդւո՛ցն՝ այն կորըստեան.
Վերա՛յ գայցեն՝ քոյդ գագաթան,
և զքեզ պատե՛ն՝ որպէս պարան.
Եւ սատանայ՝ դէ՛մ յանդիման,
կացցէ յաջմէ՝ քեզ աւգնական:

Արդ եղեցես՝ դու հալածեալ,
որպէս փոշի՝ հողմով հոսեալ,
՚Ի հրեշտակէ՝ տեառըն նեղեալ, Գ
իբրեւ ըղձեւս՝ անհետ եղեալ:
Եւ ճանապարհ՝ քո խաւարեալ,
յաջ է յահեակ՝ զքեզ պաշարեալ.
Արագապէս՝ փոյթ ժամանեալ,
քեզ որոգայթն՝ անգիտացեալ:
Ո՛րսըն զոր ինձ՝ գաղտ թագուցեալ,
առցէ զոտիւք՝ըդ խորտակեալ,
՚Ի գո՛ւբ խորին՝ ապականեալ,
իջցես դու ան՝դըր կորուսեալ.
Իբր ըղձագան՝ գետին կըլեալ,
կորխ ւաբիրոն՝ յերկրէ ծածկեալ.
Քանզի քեզ ա՛յն՝ բաժին հասեալ,
արիւնահե՛ղդ՝ նենգով լըցեալ:
Որով արեւ՝ըդ պակասեալ,
լըցես տանեաց՝ խոտ ցամաքեալ.
Եւ ժամանակ՝ կենացդ հատեա՛լ,
յորում է յոյս՝ քո հաստատեալ:
Ընդ քեզ և ազգ՝ըդ կորուսեալ,
հագարացւոց՝ լըցե՛ն ջընջեալ.
Որդիք ձեր ո՛րք՝ կանայք գերեալ, պժ
լըցե՛ն մուրողք՝ և աստանդեալ:

Ելցե՛ն յարկաց՝ըն տարագրեալ,
փոխան իմոց՝ըն տատանեալ.
Օ՜ ինչս և ըղձոյս՝ ձեր վատատակեալ,
առցեն աւտարք՝ յափշտակեալ.
Օ՜ որ հատուցէք՝ ինձ չարաչար,
դարձցի՛ ՚ի գլուխ՝ ձեր բազմացեալ.
Եւ մի՛ գըտցի՝ ձեզ աւգնական;
կամ ձեր որբոցն՝ ոք ողորմեալ:
Այդ եղիջի՛ք՝ դուք տատանեալ,
հանդերձ ծնընդովք՝ յազգէ ջնջեալ.
Չե՛ր յիշատակն, յերկրէ բարձեալ,
՚ի մէջ մարդկան՝ ո՛չ յիշեցեալ:
Գո՛րծ զանիծից՝ դու զգեցեր;
ձեան այսորիկ՝ զայս սիրեցեր.
Այդ քե՛զ ելցէ՝ կործիւ աւրեր,
և կայենին՝ հասցէ երեր,
՚Ի դառնութիւն՝ դարձցին տարերք,
ջրհեղեղին՝ ելցեն գետերք:
պէ Սեաւ ամպ մըթին՝ կարկըտաբեր,
զքեզ արասցէ՝ անպըտղաբեր,
Սոդոմայ հուրն՝ ծըծըմբաբեր,
իջցէ ՚ի գլուխդ՝ անիծակեր:
Քան զփարաւոն՝ զեգիպտացին,
խիստ և ժայրագ՝ արտուիւ եղեր.

Ո՛չ ըղձմանկունսն՝ իսրայէլը ,
միայն զարու՝սըն սուզեցեր ·
Այլ հաւասա՛ր՝ խողխողեցեր ,
յարեան վըտակ՝սըն խեղդեցեր :
Ալո՛ղ անդրանիկ՝ զո՛ր սիրեցեր ,
դո՛ւ և քոյին՝ տոհմի որեր ,
'Ի հրեշտակէն՝ այն մահաբեր ,
սատակեցին՝ յանլոյս գիշեր :
Զանմեղ գառինս՝ պատառեցեր ,
ո՛վ դո՛ւ և քո՝ ազգի գայլեր ·
Ցաղջամրղջին՝ ւոչ 'ի կարմիր ,
ծովն անդընդոց՝ ընկըղմեցեր :
Զամաղեկաւ՝ չարեաւք զանցեր ,
զնորա իսրայէլ՝ չարչարեցեր ·
Իսրայէլին՝ ա՛ծ յիսուս , պէ
զքե՛զ արասցէ՝ անմանկաբեր :
Հարցէ զարեւդ՝ 'ի սուր սուսեր ,
ե՛բր անխընայ՝ զիս դու հարեր ·
Եւ ըզքաղաք՝ըս քո յաւեր ,
զերդ զերեքո՛լ՝ըն հիմն 'ի վեր :
Որ զքանանուն՝ ջընջեաց զազգեր ,
յեսուաւ յերկրէն՝ աւետաբեր ·
Նո՛յն արասցէ՝ ո՛րն իմ յիսուս ,
զքեզ տարագրեալ՝ և տարաբեր :

Զերդ ըղձողեաթ՝ բըղըրշտացին ,
յո՛յժ ւ՚ի հասակ՝ըդ փըքացեր ·
Պի՛ղծ քո դիւաւք՝ նըզովեցեր ,
և պերճալի՝ զքեզ ինձ ցուցեր :
Արդ ՚ի դաւթայ՝ ծընեալ մանուկ ,
տէ՛ր և որդին՝ խորհըրդաբեր ,
Հարցէ՛ ըզքեզ՝ այդը ՚ի ճակատ ,
երեք քարեան՝ յեռանձնաբեր :
Առցէ՛ ըզգէնդ՝ յոր յուսացեր ,
բաշխէ՛ զաւար՝ըն զոր առեր ·
պխ Հատցէ՛ ըզգլուխ՝ քո ՚ի սուսեր ,
որպէս և ան՝ դանաւր տեսեր :
Ըստափսակայ՝ նըմանեցեր ,
զեղջիւրդ ՚ի յա՛մ՝պըս համբարձեր ,
Բա՛նս առ բարձրեալ՝ըն խաւսեցար ,
և ՚ի յերկինս՝ զբերանդ եդեր ·
Արդ ՚ի դըժո՛խս՝ իջցես ՚ի խոր ,
քե՛զ անկողին՝ մէջք և ցեցեր ·
Եւ նո՛յն հրեշտակ՝ըն մահաբեր ,
սըրով հատցէ՝ զքե՛զ ՚ի յազգեր :
Անտիոքոս՝ երկրորդ եղէր ,
և զիսրայէլ՝ըս գերեցեր ,
Զտո՛ւն յուդայեան՝ յաւար առեր ,
զմակաբայեանք՝ չարչարեցեր :

Արդ հատուցի՝ քեզ փոխարէն ,
չարեացդ ամէն՝ զոր գործեցեր ·
Տուն քո լիցի՝ անհետ աւեր ,
և դու գերի՝ ազգովդ յերեր ·
Տոհմ և ազինք՝ըդ քո թուրքեր ,
հալածեսցին՝ յերկրի եղեր :
Հերովդէի՝ նըման գըտար , պծ .
ւ այլ առաւել՝ գերազանցեր ·
Օ մայրըն մանկամբ՝ դու ըսպաներ ,
զկաթն ընդ արեան՝ըն խառնեցեր :
Արդ զի դու յիս՝ ոչ խնայեցեր ,
ւ ողորմութեամբ՝ ոչ ներեցեր ·
Եւ քեզ յաւուր՝ըն չարութեան ,
մինչ տագնապիս՝ սարսըռաքեր ,
Մի՛ գըթասցի՝ աջ արարչին ,
ւ ոչ խնայեսցի՝ ողորմաքեր ·
Այլ ՚ի մաւտոյ՝ մերձ ՚ի յաւրեր ,
հեղու զմըրթերն՝ յոր գանձեցեր ·
Յաւուր վըրիժուց՝ըն հատուցման ,
մինչ հարկանի՝ ոտն ըղջարեր :
Քանզի իսպառ՝ բարկացուցեր ,
զքաղցր և զքարին՝ դառնացուցեր .
Ահա մերձեալ՝ աւր կորըստեան ,
քո ժամանակ՝ թըշուառաքեր ·

Զի է համեալ պատրաստաբեր ,
տ՛ր 'ի վերայ՝ քո վրիժաբեր ։
պկ Այն որ գոչէ՝ աստուածաբար ,
ւ ինքըն յայտնէ՝ մարդկան 'ի վեր ․
Զաջն արձակէ՝ վըրէժխընդիր ,
զսուրըն սըրէ՝ փայլակնաբեր ,
Արբուցանէ՝ զնետս իւր յարեանց ,
և կերիցէ՝ զմիս քո սուսեր ․
Մինչև առցէ՝ բազմապատիկ ,
զվրէժ արեանն՝ իմ զոր հեղեր ։
Այս յառաւուրեայս՝ և յանցաւորս ,
յորում ունիս՝ փոքր ինչ աւուրեր ․
Յոր հուպ եղեալ՝ է քեզ տապար ,
և հատանէ՝ որպէս ծառեր ։
Բայց զի՞նչ լինիս՝ ով եղկելի ,
յայն ահագին՝ աւուրն յահաբեր ,
Որ սպանելոցն՝ է կենսաբեր ,
և քեզ կըրկին՝ նա մահաբեր ։
Նոքա Թըռչին՝ ամպովքն 'ի վեր ,
'ի հրեշտակաց՝ խառնին դասեր ․
Իսկ դու կոծիս՝ անդր առընթեր ,
քո մահմէտովդ՝ յոր յուսացեր ։
պհ Դիւաց խառնիս՝ դու 'ի գընդեր ,
զորոց ըղձամ՝սըն գործեցեր ․



Նոցա՛ դըրախտին՝ բանին փակեր,
երկնից դըրուն՝քըն լուսաբեր ։
Քե՛զ դըժոխոց՝ բացեալ բերան,
և տարտարոս՝քըն ցըրտաբեր ։
'Ի հուրն անշէջ՝ կիզողական,
անքո՛ւն որդան՝ցըն լինիս կեր ։
Խաւարն անլոյս՝ ւանաւարաբեր,
Թա՛նձր և մըթին՝ գերդ գոյն կըպեր ։
Որ է նա հուր՝ խաւարակերպ,
չունի՛ ճաճանչ՝ ինչ լուսաբեր ։
Այլ թանձրամած՝ շաւշափելի,
մի՛նչ մաւտ անլոյս՝ է յայս գիշեր ։
Այրէ՛ խայտառ՝ բայց ոչ ծախէ,
անհա՛ստ պահէ՝ միշտ 'ի յերեր ։
Ո՛չ ընդհատար՝ ա՛մ կամ դերկու,
ո՛չ ընդհարիւր՝ հազար բիւրեր ։
Այլ անվախճա՛ն՝ է և աներբ,
և յաւիտեան՝ անպարաբեր ։
Յո՛ր անկանիք՝ դուք անդտեաւր, պձ
այրի՛ք որպէս՝ հոսեալ յարդեր ։
Կամ դորոմանն՝ ընտրեալ բասեր,
'ի հրեշտակաց՝ կապեալ խըրձեր ։
Յայնժամ լըցցի՝ բանն ասացեալ,
մարգարէին՝ դաւթայ երգեր ։

Ուրա՜խ լիցին՝ արդարք 'ի տէր ,
մինչ հատուցման՝ լինին դատեր .
Զի 'ի յարեան՝ մեղաւորին ,
լուասցեն ըզձեռս՝ որպէս յաղբեր ,
Եւ ասասցէ՝ մարդ արդարեւ ,
գուցէ՛ ա͞ծ՝ իրաւարեր .
Առնէ՛ բարիս՝ որք են բարիք ,
տացէ՛ չարացն՝ անբաւ չարեր :

Բայց դուք որդի՛ք՝ իմ սիրելիք ,
չէ՛ք ինձ մեռեալ՝ այլ կենդանիք .
Քանզի յերկրի՝ նահատակեալք ,
և 'ի յերկնի՝ նըս պըսակիք :
Յաչըս մարդկան՝ մեռեալ կարծիք ,
և 'ի յայժմուս՝ ողորմելիք :
պՂ Այլ յաստուծոյ՝ ձեռին լինիք ,
և կենդանի՝ յուսով պահիք :
'Ի հրեշտակաց՝ այժմ երանիք ,
և յանմարմնոց՝ դասուն կարգիք :
Զմահկանացու՝ մարմինս լուծիք ,
և զհողեղէն՝ տունս քակեցիք ,
Այլ գեղեցիկ՝ և հրաշալի ,
անձեռագործ՝ շինուած ունիք .

Որոյ շինող՝ ճարտարապետ,
այն որ կամար՝ կապեաց զերկինք:
'Ի ձմերայնի՝ վաստակեցիք,
յանձրեւաբերս՝ սերմանեցիք,
Զցորեանն 'ի հող՝ըն թաղեցիք,
յորում նեխեալ՝ անդ լուծանիք:
Եղեմնապատ՝ սաւամբ լինիք,
և ձիւնաթաղ՝ ամբողջ պահիք.
Մինչ 'ի գարունն՝ հողով ծածկիք,
ամեթացեալ՝ պարարտասջիք:
Յորժամ կենաց՝ ցաւղոյն արբջիք,
վաղվաղակի՝ բուսանիջիք,
Որոտ ընդ ոստ՝ վերաբերիք, Գ.
յանկարծակի՝ վեր երեւիք:
Որպէս ծաղիկ՝ բողբոջեցիք,
սաղարթագեղ՝ պաճուճիցիք.
Ծառոյն կենաց՝ մերձեալ հրպիք,
'ի մահացուէն՝ այլ ոչ խաբիք.
Բազմաբեղուն՝ ստեղն արձակիք,
մինչ 'ի յերկի՝նըս հասանիք:
Որք արտասուաւք՝ըն ցանեցիք,
յորժամ աստի՝ անդր երթայիք.
Խընդմայք ցընծայք՝ զուարճալիք,
զաւրայն 'ի գիրկս՝ առեալ հըրճուիք:

Աշխատեցայք՝ երբև մըշակք ,
ու ՚ի տապ տաւթոյ՝ սաստ քըրտնեցիք .
Յորժամ հընձէք՝ զոր ցանեցիք ,
յանմահական՝ զըրախտին հանգչէք :
Ընդ զովարար՝ տընկոյն նըստիք ,
և յաղբերէն՝ կենաց արբջիք :
Որ չարչարեացն՝ ըզձեզ լացցէ ;
դուք խընդալից՝ սըրտիւք երգերէք .
ջժ ՚Ի բոց հնոցին՝ նա՛ կիզանի ,
դուք ՚ի վըտակն՝ աղին շըրջիք .
՚Ի ձէնջ հայցէ՝ լեզուին ջըրիկ ,
դուք ո՛չ տայցէք՝ նըմին կաթիկ :
Նա ՚ի բերան՝ բելերայ ,
զոր խորտակէ՝ նորին ժանիք .
Եւ ընակութեան՝ իւրոյ տեղիք ,
է դըժոխոցն՝ յատակ ներքինք :
Իսկ ձեզ է գոգն՝ աբրահամեան ,
ուր դադարումն՝ ունիր նըմանիք .
Յորոց միջէ՝ վիհ անհընարինք ,
և անդրադարձ՝ ըմխաւէն չի՛ք :
Դուք ՚ի ձեռաց՝ տեառըն տանջեալք ,
զպարտըս մեղաց՝ կըրկին առէք .
Օ ըրբեղ պատկեր՝ հարեացն եղծէք ,
զոր ՚ի մարմնի՝ սաստ ունէիք .

Օ՛ ամաւթ ընութեան՝ըս մերկացիք ,
զաղտեղութիւն՝ արեամբ լուացիք :
Սրդ քան ըղձիւն՝ սպիտակ լինիք ,
և քան ըղկաթ՝ըն մածանիք ·
Սնձառ լուսով՝ լուսաւորիք , ջի̄
և թագ ՚ի գլուխ՝ պըսակեսջիք :
Օ՛ այս նեղութիւնս՝ անդ ոչ յերչիք ,
զոր ՚ի մարմնի՝ աստ տեսեցիք ·
Ըզ չարչարան՝սըն մոռասջիք ,
ւ՚ի մահուանէ՝ այլ չերկընջիք :
Թէ և մեռայք՝ այժմ ՚ի մարմնի ,
կեանք առ քո̄՝ ծածկեալ ունիք ,
Յորժամ ծագէ՝ յարեւելից ,
դուք ընդ նըմա՝ փառաւք յայտնիք ·
Յաջակողմեան՝ նորա դասիք ,
ընդ վըկայից՝ըն պըսակիք :
՚Ի գոյն արեան՝ կարմիր փայլիք ,
զոր ինքնակամ՝ ձերով հեղիք :
Ա՛րք ընդ արանց՝ սըրբոց բազմիք ,
կանայքդ ՚ի դաս՝ կուսից կարգիք ·
Անմեղ մանկունք՝ տըղայք սիրունք ,
՚ի հրեշտակաց՝ զունդըն խառնիք :
Իբրև փեսայ՝ թագիւ պըճնիք ,
և որպէս հարս՝ըն զարդարիք ,

ձէ Անճառ փառաւք՝ լուսաւորէք,
բազմանըկար՝ գոյն պաճուճէք:
Արեգակա́ն՝ նըման ծագէք,
յարքայութեան՝ երկնից փայլէք·
Ընդ անմարմնոց՝ դասըս խառնէք,
յիմանալեաց՝ըն բերկրեսջէք·
Միշտ երգակից՝ նոցին լինէք,
՚ի լոյս փառաց՝ տեառըն բնակէք:

---

Արդ կենդանեաց՝ դա́սք հաւասար,
բանքս այս լեցին՝ ձե́զ մըխիթար·
Որ էք ՚ի լաց՝ դուք անդադար,
նըստէք ՚ի սուգ՝ ու՚ի տան խաւար·
Վասն իմ հընձոց՝ըն տարաժամ,
կանաչ բուսոց՝ խորշակահար:
Եւ թէ ցրուած՝ կայք ՚ի յաշխար,
ու՚ի գերութիւն՝ յերկիր աւտար·
Եթէ ՚ի սրոյն՝ յայն մահարար,
մնացեալ մա́ռ իս՝ էք յուսաբար·
Եւ թէ յայլուստ՝ ոք բարերար,
յիս մերձեցայք՝ վըշտակցաբար·
ձխ Կացէք յոտաց՝ գուարճաբար,
զսուգըդ լուծէք՝ ըզվըշտարար·

Հանէք զըզգեստ՝ըդ տըխըրաբար ,
 զգեցէք պայծառ՝ ուրախաբար ·
Մի՛ տըրտմիցէք՝ այլայլաբար ,
 զերդ հեթանոս՝ կամ հրէաբար :
Մի՛ 'ի յերկիր՝ հայէք 'ի չար ,
 և զայս կենացս՝ տեսէք վըճար ·
Մի՛ յաւաւրեայս՝ անասնաբար ,
 դընէք ըղձոյս՝ իբր անհանճար :
Մի՛ զփափկութիւն՝ըս մահաբար ,
 տեսէք անձին՝ կենդանաբար ·
Մի՛ զմեծութիւն՝ կորըստաբար ,
 համեմատէք՝ կենացն անճառ .
Մի՛ զցանկութեան՝ ախտ հեշտաբար ,
 համարիցէք՝ զուարթաբար .
Մի՛ որք մեռանն՝ աստ չարաչար ,
 լա՛յք և ողբայք՝ անյուսաբար :
Քանզի ունիմք՝ տէ՛ր բարերար ,
 որ բըժըշկէ՝ զմեզ տիրաբար :
Թէպէտ հարու՝ ոչ սաստկաբար , ջծ
 այլ հայրաւրէն՝ և գըթաբար .
Քանզի սփոփէ՝ զմեզ սիրաբար ,
 և ո՛չ բարկանայ՝ նա մեզ իսպառ :
Ո՛չ ըստ մեղաց՝ մերոց արար ,
 ո՛չ ըստ չարեացն՝ ածէ վըճար ·

Այլ ըստ երկնի՝ցըն բարձրութեան,
զողորմութիւն՝ իւր բա́րձր արար ·
Եւ ընթացիւք՝ արեգական,
հեռի 'ի մէնջ՝ ըզմեղս արար ։
Զի անհնարինքն՝ է նմա հընար,
անկարելին՝ քըն դիւր և կար ։
Ահա սակաւ՝ ինչ ժամանակ,
փոխէ զպըղտոր՝ ջուրն 'ի յըստակ ·
Եւ տա́յ ըմպել՝ դառնաճաշակ,
այնմ որ արբոյց՝ ինձ դըժընդակ ·
Զվերջին մըրու՝րըն կապուտակ,
արբուցանէ՝ նըմին բաժակ ·
Իսկ ինձ պայծառ՝ և քաղցրունակ,
զանմահարարն՝ ըմպել վըտակ ։
ԶԷ Ո՛չ թէ իմոյն՝ միայն զխիմակ,
զոր ինչ հատոյց՝ ինձ ձախողակ,
Այլ և եւթնից՝ըս չափ կըրկնակ,
դարձցէ 'ի ծոց՝ իւր հակառակ ։
Իսկ ըզ կապեալըս՝ որ է 'ի փակ,
արձակեսցէ՝ տէր յընդարձակ ·
Եւ զգերութիւն՝ իմ վըտարակ,
դարձուցանէ՝ այսրէն 'ի յարկ ·
Մատնէ զգերիչս՝ իմ 'ի յապտակ,
սուր ւ'ի զընդան՝ ձեռ փոխանակ ։

Շարժէ՛ կըրկին՝ զազգըն փըռանկ,
անհուն հեծեալ՝ և հետևակ .
Իբր ըզծովու՝ ալեաց կուտակ,
բորբոքելով՝ զան խիստ և բարկ .
Ափա՛ն գետոց՝ աւազին գունակ,
կամ զէրդ աստեղք՝ երկնից 'ի կարգ .
Լընուն զամէն՝ երկրի յատակ,
որպէս ըզձիւն՝ ասրաքատակ .
Հընչեն զերդ հող՝ մըրն հիւսիսակ,
զա՛մպըն վարեն՝ ըզհակառակ .
Մաքրեն զաշխար՝ հըս բովանդակ, ՁԵ
յանհաւատից՝ առնեն դատարկ .
Զմահմետական՝ ազգ հասարակ,
անո՛ւն յաւար՝ և յասպատակ :
Գերեն զխորին՝ըն խորասան,
և զբաբելո՛ն՝ դա՛ռն աւերակ .
Եւ զանապա՝ տըրն դիւաբնակ,
զմաքքա՛ քակեն՝ հիմն 'ի յատակ .
Զայն որ յամէն՝ բարեաց դատարկ,
յաստուածային՝ ջըրոյն ցամաք .
Ցորում ըզդեւ՝ սըն հալածակ,
ա՛նդըր աւաքէր՝ տըրն հեռարձակ :
Զքա՛րըն գըլլէն՝ ըզսեւորակ,
ձըրդեն կարմիր՝ ծովուն յատակ .

Որպէս առիւծ՝ ընդ նապաստակ,
զհետ մըտանեն՝ նոցա երագ.
Կամ զո՛րդ առիւծ՝ գոչէ առակ,
փախչին էրէքն՝ ան հակառակ:
Այսպէս ջընջին՝ նոքա իսպառ,
'ի սուր սուսեր՝ 'ի տէգ նիզակ.
ջձ Եւ զմ՛յլըն առնեն՝ փախըստական,
վարեն յայն կոյս՝ մինչ անբընակ.
Առնուն ծառայս՝ և աղախնայս,
զկանայս նոցա՝ և ըզ զաւակ:
Տէրեն ամեն՝ երկրի ծագաց,
և ընդ հոնուր՝ կողմ աշխարհաց.
Քրիստոնէից՝ հանուրց ազգաց,
փրկիչ լինին՝ յանաւրինաց:
Ցեկեղեցիս՝ըն խաւարած,
յայնժամ վառի՝ լոյս կանթեղաց.
Եւ որ ծառայքն՝ էին չարաց,
խառնին 'ի գուն՝դըն մեծատանց:
Գ՛ան ժողովին՝ յամեն կողմանց,
ուր հալածեալ՝ են և ցրուած.
Շինին աշխարհ՝ քրիստոնէայց,
անչափ անբաւ՝ բարեաւք լըցած.
Լինի առատ՝ պըտուղ բազմաց,
սերմանց ւամեն՝ պըտղաբերաց:

Մարդիք ցընծան՝ զուարճացած,
 յուտել յըմպել՝ըն պարարած.
Որք վա՛յ ասեն՝ վաղ մեռելոց,   ջղ
 եղուկ կարդան՝ գերեզմանաց.
Թէ ե՞ր չհասիք՝ յաւրըս կենաց,
 յանգիւտ բարիս՝ հասարակաց.
Օ՛ր պարգեւեաց՝ հայրըն փառաց,
 մեզ ՚ի վերջին՝ ժամանակաց:
Յայնժամ որդիքդ՝ իմ հեռացած,
 որք այժմ յինէն՝ էք բաժանած,
Գա՛յք ՚ի վերայ՝ բարձեալ կառաց,
 պալարակա՛պ՝ երիվարաց.
Ուր ցրուեցայք՝ յամեն կողմանց,
 չորեքծագեան՝ տիեզերաց.
՚Ի գաւառաց՝ հեթանոսաց,
 և յաշխարհաց՝ պարսից թուրքաց:
Ե՛ս համբառնամ՝ զաչս ՚ի բարձանց,
 զձե՛զ տեսանեմ՝ շուրջ ժողոված.
Ընդ որ խընդամ՝ և ցընծացած,
 զիրկս արկանեմ՝ և զուարճացած:
Եւ զտըխրական՝ զգեստ մերկացայց,
 կարմիր կանաչ՝ գոյն ըզգեցայց:
Եւ զպատմուճա՝նըս պատառած,   Ու
 փոփոխեցից՝ նորոգ կարած.

Ո՛չ յերկրաւոր՝ ոստայնանկած,
այլ ՚ի վերուստ՚ըն փորանկած:
Եւ զառագաստն՝ իմ նըկարած,
յոսկիաթել՝ պաճուճանաց,
Դարձեալ պարզեմ՝ պայծառացած,
՚ի հարսնարանն՝ իմ զարդարած:
Անդ ՚ի ներքոյ՝ վարագուրաց,
սուրբ քահանայք՝ խորհըրդագըզեաց.
Աստուածայնոյ՝ նուիրանաց,
գո՛վ պարգեւիչ՝ պատարագաց:
Անդ մակաղէք՝ հաւտք ոչխարաց,
դասըք անմեղք՝ և սուրբ գառանց.
Ըմպէք զարիւն՝ պատճառ կենաց,
ուտէք զերկնից՝ իջեալըն հաց.
Ննակէք ՚ի վայ՚ըրս դալարաց,
սնանիք առ ջու՚ըրս հանգըստաց,
Յանմահական՝ սուրբ աղբերաց,
և ՚ի յամպոցն՝ երկնատեղաց.
ռծ Յառաքելոց՝ մարգարէից,
՚ի սուրբ բանից՝ վարդապետաց:
Պարտկցելոց՝ երկնաւորաց,
ձայնիւ հընչէք՝ ընդ հրեշտակաց,
Օ՚երեք սրբբեան՚ըն սրովբէից,
երրորդութեանն՝ երգս ՚ի բարձանց:

Ա՛րդ այսպիսի՝ պայծառ փառաց,
ա՛կընկալէք՝ յուսով կենաց.
Զի փառք նախնին՝ իմ տաճարաց,
քան ըզվերջին՝ըն լինի ցա՛ծ.
Եւ սա՛ անցեալ՝ անդր ՚ի բարձանց,
քան զառաջին՝ըն գերազանց:
Բայց այս խընդման՝ բա՛ն աւետեաց,
ո՛չ միայն իմս՝ է խորանաց.
Այլ բոլորից՝ բարեպաշտաց,
եկեղեցեաց՝ հանրականաց:
Զոր ընթերցեալ՝ ՚ի սուրբ տառից,
նախագուշակ՝ տեսանողաց,
Տա՛մ աւետիք՝ տիեզերաց,
յուսով սպասել՝ այսըր կենաց.
Եւ յառաւրեայս՝ չարչարանաց, ռե
տեւել տոկալ՝ տըրտմականաց:
Զի չէ՛ ամոլ՝ այս լինելոց,
ո՛չ առ յապայս՝ կատարելոց,
Այլ փութապէս՝ վըճարելոց,
արագ արագ՝ վախճանելոց:
Զի ե՛կն եհաս՝ աւուրց մերոց,
զոր ասացին՝ ամաց թուոց.
Եւ ՚ի տուեալ՝ նըշանս գըրոց,
տեսաք մտաւք՝ թէ է գալոց:



Ա՛րդ զայս տուաք՝ բան սակաւուց,
ձեզ մխիթար՝ տրտմեցելոց·
Յերկրաւորաց՝ ւ ո՛չ յերկնայնոց,
յուսով սպասել՝ որ լքնելոց:
Զի զայն հընար՝ չէ՛ ասելոց,
և ո՛չ մարդոյ՝ բան խաւսելոց·
Ո՛չ հողեղէն՝ տեսանելեաց,
և ո՛չ ունկամբ՝ լուր լսելեաց·
Որ չէ՛ 'ի միտս՝ անկեալ մարդոց,
զոր պատրաստեաց՝ տէր իւր սրբոց:
աՆ Որով թէ դուք՝ համբերեցէք,
չարչարանա՝ ցըդ հասելոց·
Զարքայութիւն՝ տո՛ն ընտրելոց,
էք ընդ նոսին՝ ժառանգելոց:
Յորում տեղւոջ՝ տեսանիցէք,
ըզսիրելեացն՝ անձինսն 'ի լոյս·
Զոր այժմ ողբայք՝ լալով անյոյս,
անդէն ցընծայք՝ տեսլեամբ սրբոց·
Անդր 'ի դրախտն՝ էք մրտելոց,
'ի միասին՝ զուարճանալոց,
'Ի հայրենին՝ զոր կորուսաք,
յանմահական՝ կեանքն երկնայնոց:



Յորոց հայցեմ՝ անդ լինելոց,
և զիս յիշել՝ տարտամ յոգւոց.
Զլո՛կ համանուն՝ մեծի հայոց,
զՆերսէս բացեայ՝ բարեաց գործոց.
Եւ շառաւիղ՝ նորին ոստոց,
բայց ո՛չ նման՝ գոլ արմատոց:
Զողբերգական՝ բանիս գրող,
առ ՚ի սփոփա՝նըս տըրտմելոց.
Քե՛զ և բոլոր՝ մարդկան այլոց, ուխ
որք են ՚ի սուգ՝ վասըն նոցունց:
Քանզի բանիւ՝ զիրս եղելոց,
մե՛ր ժամանակ՝ըս դիպելոց,
Որով տուաք՝ ո՛չ թէ գիտնոց,
այլ տխմարաց՝ և տղայոց:
Զոր պահանջեաց՝ տարփմամբ սիրոյ,
եղբաւրորդին՝ իմ ըստ մարմնոյ.
Մանուկ տղայ՝ գոլով տիոց,
և կատարեալ՝ յիմաստ ոգւոց.
Ներհըմտացեալ՝ յարհեստ գինուց,
ըստ հրահանգին՝ հոռվմայեցւոց,
Գո՛լ յաջողակ՝ ՚ի նուս ձիոց,
որպէս աւրէն՝ է վարժելոց:

Անուն նախնեացն՝ յորջորջելոց,
Է Ապիրատ՝ մակձայնելոց:
Օ որ արարաք՝ խրախճանելոց,
Երբ ըղձաւսա՛նըս հրճուելոց:

---

Արդ աուընկա՛լ՝ բան դուզնաքեայ,
և վերծանեա՛՝ ըստ իմաստնոց.
ուծ Ո՛չ առաւել՝ և ո՛չ նուազ,
այլ 'ի յոտին՝ բերեալ չափոց:
Ցոր վայելեա՛՝ սիրով սոցունց,
լըրմամբ տառիս՝ քո խընդրելոց.
Օ որ աստանաւր՝ էմ յանգելոց,
զգերըս բանիս՝ վըճարելոց.
'Ի փառըս Հաւր՝ աւարտելոց,
և Որդւոյ Հոգւոյն՝ կատարելոց:

## ՎԱԽՃԱՆ:

'Ի բաղդատութենէ երից օրինակաց՝ ըս-
պատշաճագոյնն ընտրելով 'ի բնաբանիս,
զ'ի բաց թողեալ տարբերութիւնսն նշա-
նակեմք աստէն իւրաքանչիւր յանուանէ.
վասն գաղափարին Եզնկայ՝ եղեալ տառս՝
ե. Կիլիկիոյ՝ կ. և Փարիզու՝ փ:

Փ. 'Ի սկիզբն անդ յաւելեալ ունի զայս
վերնագիր. "Երգըս ոգեալ տն Ներսէսի,
և սրբազան կաթողիկոսի, եղբօր սբյն գրի-
գորիսի, հայոց մեծաց հայրապետի": Կ.
ճան բարառնական: Ն. տողիւ չափեալ:
Կ և փ. խօսեալ բանիւ: Կ. և ընդոստն
ընդ երեքկի: փ. օր շաբաթի:
Փ. Ողբացէք եկեղեցիք... հարք և Ա
եղբարք և սիրելիք.. քաղաքք և գեղք:
կ. կերպից՝ըն նմանի... աղենայի.. առ
'ի ձեզ քառորդ վտակ.. գետ հոլովի:
փ. բղխման բանի:
Փ. Աշէրսաբար բղխեալ յերկ": կ. Ժ
հօր միածնի.. ամենի.. քանզի նախկին..
որդի ընդ հօր: փ. պտրն 'ի խաչին.. այժմ
եմ 'ի հաւտի, երկրպագեմ: կ. բայց դու
լսեա ով սիրելի:
Փ. Ջոամ մայրաքաղաք.. մեծի ա- Ե
թոռ": ե. և փ. եկեղեցիքդ ան": կ. բազմ-
աստեղեան... բանըդ խաւսիմ: փ. հա-

սեալ ընդ ղուկ"... վիճակաթուղթ մա_
թէի.. իմ այս վայրի.. լալ ընդ լացողս :

Լ̄ Փ. 'Ի կապելոյս 'ի տան.. ինձ գերողի..
սկիզբն յասխայի : Կ. մաքրագունի :

Խ̄ Ե. Բայց դու թողեր : Փ. զիս յամայի :
Կ. մարդ անապական : Փ. զզօրութիւքդ..
իմոյ նեղչի : Կ. աղէքսանտրը ցանկալի :

Ծ̄ Կ. Հրեշտակք երամք : Ե և Փ. հիմն
և աւարտ ուղղա" : Փ. տարամերժեալ
հերձ" : Կ և Փ. ողջակցելով ինձ յայս
վայրի :

Կ̄ Փ. Մատուցանել տ͞ն առաջի : Կ. 'ի
տեսանել 'ի մեզ բարի : Փ. է տեսանել
մեզ ըզ բարի.. հաճոյասցիս :

Հ̄ Կ. Ընդէր չհասանիս : Փ. լաց ընդ լա_
լիս յամենայնի, վ͞ս իմ իջօ ջուր վըտակի :
արդ 'ի ստորին :

Ձ̄ Կ. 'Ի յաբգարէ թագաւորի... և շա_
ռաւիղ գաւա".. լուսաւորչին այնմ : Փ.
կայթեաց շո" : Կ. ստորինս երկրի :

Ղ̄ Կ. Ազգ երկրածնի : Փ. յանապատն էիր
վայրի, ւէիր նման... որդիս ծնար յաւա_
զանի : Կ. շատ է ծովի :

Ճ Կ. Թագ՝ ըն քո զարդի : Փ. որ է զար_
դար՝ անք դշխոյի : Կ և Փ. ուր պատմու_
ճան հարսնարանի, կամ՝ ոսկեհուռ : Փ.
ու.ր չէ փես" : Կ. զեր՝ զըն դաւթի.. ոչ
հարկանի, զկողըն հնչող : Փ. զփողըն
հնչեն : Կ. պարարակ զենամոլըն.. ոչ զե_
նանի :

Կ. Օրուարճակից : փ. զուարճասցեն : ՃԺ
ե և փ. որդւոյ անառակին : կ. հայրենի..
մեղաւորի .. ընթերցողքն՝ են մը.. կամ
վարդապետք : փ. ո՛ւր մը խորհուրդն՝ 'ի
սպասու, կամ պաշ" : ե. գահոյք թագա-
ւորաց : կ. Նախարարքն ո՛ւր արքայի : փ.
յարարատեան՝ ըն գաւառ" :

Է. Ո՛ւր են վերջի : փ. յոյժ հեռաւոր՝ ՃԻ
որ չէ" : կ. անուրջք երազ... վասն որոյ
դքեզ իսկ կո". լինել սգակից :

Փ. Կամ քաջ տեղ" : կ. տուն արքայի : ՃԼ
փ. յազգէն սերեալ.. տառով բերի :

Է. Պտղով ըն լի : փ. դստերքըդ քո : ՃԽ
ե. կալով 'ի մէջ իւր հրա" : կ. որդիքըն
սիրելի.. դասուց՝ ըն հրեշտակի : փ. այն
որ հանգոյն և հաւասար :

Կ. Պաշտաճաւորն 'ի տաճարի : փ. զոր ՃԾ
թէ ասել՝ ըն հարկ լինի : կ և փ. յորոց է
ոչ՝ մի 'ի միջի : փ. ընդ երազի... ըզյոր-
դութիւն՝ յորդ վտակի.. պղպըճակի : կ.
սուր անող" : փ. ոչ է յագեալ :

Փ. Սոյն Նա եհաս.. անդաստանի : կ. ՃԿ
կանաչ խընծան՝ ուր 'ի հասկի : փ. կա-
նանչաւոր 'ի հասակի : ե. ջրոց հեղեղի :
կ և փ. անթաղ մեռեալ՝ դէշ : փ. քա-
հանայից քրիստոնէի.. սարկաւագաց քը-
րիստոնէից.. և այլ բազումք : կ. որ քեզ
հասին յայսմ վայրի.. մասունք սրբի :

Փ. Վա՜ այսորիկ ո՛վ եղկելի.. այս ամե- ՃՀ
նի : կ. 'ի քոյդ յայնժամ... քաջանման

յոյժ տեսանի, իմըս քոյինդ : փ . կակա_նալը . . ոգի . . աղէտ՝ ըս ցաւալը : ե . այսմ աղետի :

ճղ Կ և փ . Որ են հանուր մարդ" : փ . ըզ-յարևելս արևմտօք : կ . առ որ գո" . . թէ ազգ . . . յառագաստի : կ և փ . ծերք և ամեն՝ հափ : ե . և թագաւորք : փ . սար_կաւագունք . . հանուր կզերիկ" :

ճթ Փ . Սրովբէից . . զոր ողբակից : կ . յոր_դոց իմոց կատարածի . . . փետտեմ : փ . իմ ապտակի :

Մ Կ . 'Ի տան մթին : փ . օրէն սրգաւո_րի . . կարմիր զգեստի, սև զգենում՝ գոյն տրխրալը . . զաբտօսը : կ . է 'ի տեղի : ե . զայն ասեմ՝ զոր վայելը :

մա Կ և փ . Մայրաբար դիեցուցի . . գեղեց_կապէս յաւրինեցի : փ . քան ըզյերկիր : կ . կաթին՝ որ բըխէր . . որպէս լծուի : փ . զուարթածաղիկ բոյսս յօրի" :

մբ Կ . Գետոց նման՝ վտակ հոսէր, զբու_րաստանս արբուցանէր : կ և փ . և զհրա_պարակսն զար" : կ . բազմադիմի տունկ . . ծառօք ծաղ" . . առաւօտուն . . յերկրի նայէր :

մգ Փ . Ուք երկրածին՝ որ սերմանէր : կ . ւայնու զորդիս իմ : փ . թէ չեն նմանա" : կ . այս քաղաքաց՝ որ :

մդ Փ . Պարիսպ եղեալ՝ լայն . . գլուխ՝ըն դիտալոր : կ և փ . իմ շքեղաւոր : կ . յարկ և փո" : կ և փ . բայց ըզխորանսըն :

կ · է նմանա″ : փ · վերնագունոյն հան″ :

Փ · Այդպէս կայր·· մայր որդւոց : կ · մծ
ղինև կացին : փ · վարդից՝ նմանաւոր : կ ·
կամ․ գերրունակ ճրդած·· տաշտաւոր··
տունկս որ է կորդ : փ · տունկ որ երկրորդ :
ե · աւանդ պատեալ : փ · աւաք պատեալ··
կայր միջի հանդի″ : · · · այս բարիքն··
զոր 'ի յանցեալ դարուն սկսեալ ։

Կ · Բաց 'ի հասեալ : փ · մեր Թշնա_ մկ
մեաց դասքըն խն″ · · · ոտից եղան·· ծը
նունդք որդիք ադ″ ·· վերայ ելան :

Փ · Կամ ինչ իրաց : կ և փ · Թեպէտ մհ
և յոյժ՝ անհնարական, է զբովանդակն՝ա_
սել մեզ բան : փ · սակայն փոքրիկ՝ մի բա_
ւական, յայտնեմ զադէտն՝ որ դիպեցան :
կ և փ · քանզի այդւոյն՝ զիս պահապան, եդ
որ ստեղծեաց՝ զիս իսկզբան : փ · տեսեալ
զփառս·· հանին յերկիր : կ · աստի բու_
սան :

Կ · Արարչական : փ · հան 'ի վերուստ մձ
տեղ հանգստեան · · · աղտեղեցայ ։· վըան
եղայ · · · ես ինձ դաւթայ :

Փ · Լինել յազգին·· ապա զաւարսըն մղ
պարագայ·· և քանդէին : կ · Թողին զնա :
փ · զորս 'ի յուժոյն պակա″ · · · և դեղացոյց՝
իմ ոչ գտայ :

Փ · Նա և յատակըս մօտեցայ : ե · այն Ց
նենգաւոր : կ · գայլ 'ի մայրին : փ · զանկ
'ի չարեաց՝ գործունէին·· յորում տեսին :
կ · յորժամ ետես :

յդ̃ Կ. Մըխըրականին: փ. շունքըն զե–
նեւ՝ պատեալ կային... վառեալ կային.
զըրահաւորք՝ մըկըրտաւորք, Ճոշուք պա–
տեալ՝ բոլոր յանձին. Թուրաւորք սաղեղ–
նաւորք.. խոցոցէին.. մեքենային: կ.
յաղթել քաջաց՝ըն հըսկային:
յե̃ Փ. Հնար մըտին.. սիւն և նե՛.. օրէնն
էր.. բարբառք արձակեցին.. մի՛ յամա–
ռել՝ ընդդէմ նոցին.. քաջքն և արիքն:
կ. ոչ յերկուալ:
յզ̃ Փ. Ո՛չ հաւատալ՝ըս.. մեռանէին.
քանզի սըտել: կ. մակարէանց: կ և փ. ազգ
երկրածին: փ. բարեաց աստէն՝ ունիմք
բաղումք ՚ի հանդիսէն:
յէ̃ Կ. Այժմըն գովէին.. փոքր ինչ է վիշ–
տըն: փ. անբաւ բարիք՝ պարգև առին..
նըք վկային: կ. որք միանգամ ընթանա՛:
փ. մի՛ նմանեսցուք:
յը̃ Փ. Չէ՛ ՚ի ցեղէն հողե՛.. զոյս մեր ՚ի
մարդ: կ. յաղթականին.. զի թէ յաղ–
թեմ՝ըք պըսակիմք.. եթէ մարմնով
յաղթա՛: փ. ՚ի յարդարոցըն դասեցին.
յթ̃ Ե. Կոչէ բաժին: փ. որ է պայծառ և–
րևելի.. անցաւորին.. ՚ի փափկութեանց:
կ. որ փոխանակ: փ. քաղաքին, որ է շի–
նած.. որոյ շինող Ճարտարա՛: կ. այն որ
կանգնեաց կամար զերկին.. զգամն վե՛:
փ. և զոր ՚ի սմա:
յժ̃ Փ. ՚Ի նմա հաստատեսցուք, զյոյս ըզ–
հաւատ՝ըս զերկոսին. մի թէ կամի՝և... այ–

սու աւել՝ մեք գոհաս" : կ. մեր որ լինի :
փ. բնութիւնն : կ. մանկանց նոցին :
Փ. Վաղափուլ.. նոցին.. դժոխն : ե. յձ̄
զորս աւերեաց : փ. և այսպիսին, առ մի_
միեան՝ըս գո" : կ. Անդ ոչ.: Այլ միաք".
Միշտ հանա" : փ. միախորհուրդ՝ըք լի_
նէին : կ. իւր ցեղին :
Ե և փ. Մի երկընչիք 'ի սրոյ նոցին : յդ̄
կ. քաջ և արի՝ զօրքն ասէին : փ. և ոչ՝
ժամանակին.. յամեալ յապաղէին : կ. որ
յընդհանուր :
Փ. Տալ օգնութի̄ : կ. վըճարէին : փ. Ն
վճարեցին.. թէ կանխեալ ժամանակին..
դշարիս մերկացուցին : կ և փ. իսկ հասու_
ցին : կ. Ճըմլին.. որովայնիս :
Փ. Ցայն լոյս երեկ՝ըն.. յայնժամ ըզ նժ̄
հուըրն.. բորբոքեցին.. որ 'ի վերուստ..
փորուածին.. պարիսպ՝ըն ամրոցին : կ.
իսկ դառնային : փ. զինուք անկար՝ծըն
պա" : կ. դիմել 'ի մահ՝ խրախու" :
Կ. Գըռոհ տային : փ. Նպիսկոպոս՝ըն նի̄
պատուական, 'ի ձեռն.. եղբարք և սիրե_
լիք.. զմահն ընտրեցէք.. որ և զկեանս՝ է
գո".. իսկ չարութիւն արբա" : կ և փ. ըզ_
դասըն վսուէր : կ. նոցին, յայնըմ մար_
տին՝ պատերազմին .
Փ. Գունդքըն զօրացն : կ. մերձեալ 'ի նի̄
մուտըն պա" : փ. ինչ անտառէն.. նը_
հանջէին : կ. երանի զանձն իմ էին : փ.
Ճըմլել.. բանիւ լուեմ :

նխ Փ. Ցաղթել քաջանց՝ որ․․ վիրօքն ան_
գրն"․․ գոչեաց ռամիկ․․ 'ի սուր սուսեր՝
ւ'ի գերութի : Կ և փ․ ասաց լինել : Կ. և
զայն լուեալ եբրայեցին : փ. ձեռամբ
յեռնեալ տագնա" : Կ. փողս և քօղեր՝ըս
գոչէին․․ մինչ զի երկիր :

նծ Փ. Այնքան ղատեալ վաս"․․ ժուժ_
կալէին․․ վս այնորիկ : Կ և փ․ տեսութի
էր դըժուարին :

նկ Փ. Եւ առաջի՝ ընթա"․․ իսկ մարդա_
ղէմն՝ըն գազանին : Կ. ըզսայրասուր՝ըն
քարշէին : փ. 'ի մէջ գառանց, 'ի հաւտ
նոցունց․․ արեան վտակքըն : Կ. և ըզման_
կունս, անխնայա"․․ յարեանց՝ըն ճապա_
խին : փ․ ալիք՝ ներկանային :

նհ Կ. Եւ քհնյքըս խոր" : փ. քանզի ա_
րեան ծարաւէին․․ գոչեաց անապատին,
և գէշախած՝ արջն 'ի բային : Կ. ցըրու_
էին․․ պատառէին :

նձ Կ. Ըզգուրսն․․ ոչ Թուլացոյց՝ըզ․․ և
բազմութեան : փ. և բազմութիւն փա_
խուստ առին․․ ըզչեղջ․․ օրինակ մայրեց
փայ" : Կ. դիզանային․․ նուազէին․․ ըզ_
տղայք՝ըն գրկ", 'ի միասին :

նղ Փ. Օ՛ի անդորրել անցանէին : Կ և փ.
այլ զի չէր ոք՝ օգտակարին, ոչ ձե" : Ե.
քանզի խաւսել : փ. և ոչ 'ի քոյր՝ ըս
գթա" : Ե. աղեկոտոր ըն լինէին :

Շ Փ. Իսկ փախուցեալքն ըշտապէին․․
զարհուրէին․․ անկելոց : Կ. կէսքըն տխուք :

փ. և 'ի ծովին.. բայց այլ ազգացըն..
առ ընտրութի... հասակին ։

Կ և փ. Որք զըննէին կողոպտէին ։ կ. շժ
սարկաւագ՝ ընթեռ".. 'ի դպրութի...
ապաժուժ ։ փ. քարին՝ըս հո" ։

Կ և փ. Ցորմէ և բան՝ մարգարէին ։ շի
փ. յերկիր հեղին.. ըզքհնյք և ծիլվըքն..
չորից ծագաց քրիս" ։ կ. դաղմատեան և
թոր" ։ փ. ըզդաղմատեան և զթորգոմեան ։

Փ. Մակաբային.. քահանայ ։ ե. հայոց շլ
ազգացեղին ։ կ և փ. այն որ պահեաց ։

Փ. Իբր օրինակ հօտից նորին ։ կ. ոչ շխ
լինիցի ։ փ. գրեալ բանին, իւրաքանչ
իւր.. և կամ տեղեակ քերեալ տա". այլ
և նոցունց գերարհեստին.. վախճանես_
ցին.. քանզի իբրև ըզչունք հաօին...
և սրոյ վաղճանէին ։

Կ և փ. Սակաւք 'ի դղեակն՝ ամր" ։ ե. շծ
լըսէք բանի ։ փ. կերակուր ամբա".. և
ոչ ըզջուրն.. քրիստոնէից.. գայ և հրա" ։

Կ. Օրուխտն ստէր ։ փ. զոր ետ նոցին ։ շկ
կ. որ բընութի ։ փ. որոց ունէր.. կանգել
ոտին.. ապագային ։ կ. ըստ ժանդագործ
անաւրինին ։ փ. զարիւնս նոցին ։

Կ. Կողոպտեցին ։ փ. և հաւուց, զոր շհ
պա".. հանդերձ անձին.. զոսկեղէնին ։ կ.
զունակ բուրուռն.. և զհնչեցող զանկա_
կանին ։ ըզվարագոյր՝ըս խոըա" ։ զարդ
հանդերձին ։

Փ. Օրուսովըն պատ".. որ է նըման.. շձ

որ 'ի կարգին ։ ե․․ ողբումն է յեսային ։
փ․ պար առնէին, և հայրապետքն՝ այն ։
ե․ և հայրապետ՝ըն 'ի միջի ։ կ․ մեղու ան_
րինակ անդ ձեմ" ։

շղ Ե․ Ոպ ըղհաւտն ։ կ․ մի տէրութիւն ։
փ․ կամ՝ դառնագոյն պըտ"․․ և գիս ա_
րեան․․ ծնեալ որդիքս, աստ 'ի գիրկըս՝
խողխողե" ։

Ո Կ․ Եւ ըղսրբոյ ածած" ։ փ․ որ 'ի
կարգին ։ կ և փ․ իսկ առաջնորդ ։ փ․ քեզ՝
մեծ աւետիս․․ տուն և տեղի․․ մոլորած՝
ժողովրդոցս․․ անշունչ քարի ։

ոժ Փ․ Յորոց արեամբ ։ կ․ մաքայ ։ ե․ մէք_
քա ։ փ․ յորում է յոյս․․ զի այժմ առաք
փոփո"․․ յարևե"․․ 'ի հետ խաչին ։ կ․
ըղպաշտաւնե"․․ խրախճանէին ։ փ․ այլ
և չարեաց՝ արբանեկին ։ ե․ որոց շաղէք ։
փ․ զաղէք․․ կատաղեալ, յորսոյ վերայ
արձա"․․ սպանեցելոյն, յանձինս՝ իւրեանց ։

ոի Կ․ Օրովայնսն հեղձնուին․․ խայթա_
տէին․․․ ըստ ըսպանելոց" ։ փ․ և չարու_
թիւն բռ"․․ և հրաշալին․․ հոմանուն․․
արիւնահեղ՝ նենգով 'ի լին ։

ոլ Կ և փ․ Երգել նըմին ։ կ․ գինարբունս ։
փ․ գինարբոյս ։ կ․ քերովբէքըն ։ փ․ խո_
րան սըրբոց․․ իւրս՝ըն մտնէին ։

ոխ Փ․ Ոսուցեալ է մաւհ"․․ ըղտոց տուն․․
և զայլ․․ զոմանս ինք" ։ կ․ որ էր վատ_
թար ։ փ․ զորս համաւտ․․․ սուլթա_
նին․․ և կոյր կուրաց ։

Կ. Խաւարելոց աւ" ։ փ. աղտեղութի, ոճ
զանասելի.. ուսուցանող... աւրինադրէ
զլուանալին..որով և զորտք որ'ի ծովին ։.
մեղօք (թաղել ։ ե. արդ այսպիսի լուր ։ փ.
այլ զպաշտաւն բար" ։

Փ. Քոյոյ Նախնին.. փաղամպարին.. ոկ
'ի մրկլրթին ։ կ. զի ես աչա վաղվա".. 
յերկրէ բաւնամ զազգրս նոցին ։ փ. և
զազգ նոցին.. այլ արդ գրէր.. ինք փր-
քանայր ոգ" ։ կ. զայս որ կային ։ փ. ոչ
գիտելով յիմար հոգին..թէ զայս ոչ ուժն
իւրոյ բազկին.. պիղծ պնտին ։

Փ. Գործոյ չարին.. Նոյնպէս լինէր ոչ
ինէլին ։ կ և փ. դարձեալ բանիւ տն այ ։
կ. զաւազանաւ՝րն բար" ։ փ. եղեալ՝ 'ի
հրամանին ։

Փ. Իբրև յառաջ ժամանակաւ, եբր" ։ ոձ
կ. առնէ յանդին ։ ե. ձեան նրմանին..
տալոյ նոցին ։ փ. հորդուն գլխոյ... իսկ
նոքա զիս՝ դառնա" ։

Կ և փ. ոսկերք անկ" ։ փ. առ խորան_ող
սրն.. զորս երեսուն.. որդիք էին ։ կ.
ւ'ի զալ չարեաց՝ բողո" ։

Փ. Պատասխանեալ խիստ ասէին ։ կ. Չ
'ի սրբութիւնսդ ։ փ. ածեմ զաւեր.. զորս
'ի հարկէ.. առին տարան 'ի գերութիւն..
և ըզտաճարըն հրթաշալին. կ. զկազմած
զարդին ։ փ. և ժողովուր" ։

Փ. Եւ ըզսխոխ անդ.. բազումք են չճ
գոր պատմին.. և թէ չինայէ.. յոյժ ա_

ռաւել քան ըղնոսին · այլ որպէս հայրըն
զիւր որ" : կ և փ. կամ տերունեան . .
արբեցէ ասէ՝ գան : փ. քան զայլն՝ որ ոչ . .
քանզի լցաք փորձովք . . և ոչ արարաք՝
զկամս արարչին :

չի Փ. Ցիւրաքանչիւր՝ յիւր հա" . . մեղաց՝
անկանէին . . վարուք չին, չէ պարտ
ասել՝ զոր գործէին : կ. 'ի սը՝ըն սրով-
բէից : փ. գործովք չարին, որով 'ի նոյն . .
բերան՝ անզեղջ բացին :

չլ Փ. Այս վրձըռւխս՝ դատաստանի . . բիւր քա-
ղաքին, պատիժ նոցա՝ միայն . . կամ լծէ
նոքա՝ արդարք էին, որոց 'ի ձեռ" : կ.
պատասխանի . . 'ի սելովմայ :

չխ Փ. Այս խըրատ է . . յորում և գործք՝
ոչ երևին . . այս կըլթեցին :

չծ Կ. Որպէս՝ զերկրաւորին : փ. հրահանգ
դատաստանին, զի սուրն ածէ : կ. բարբա-
րոսին :

չկ Փ. Անձրևաց՝ զալ անչափին . . . մի-
նինային . . մըկան զազրա" . . . զամուր . .
կամ յաղթանդամ . . յայն լոյս խա" :

չհ Կ. Թաւնաւք պղծէ : փ. 'ի նայե՝լըն
քաղցրական : կ և փ. զմուկն և զխլուրդ՝ըն
միա" : կ. և ինձ եղեր մահու . . զիմ տը-
ղայս : փ. խողխողեցեր՝ զերդ ըզգա" :

չձ Փ. Եւ սընուցեր զիս 'ի մըթան . . վե-
րայ սողան : կ. մըռմըռան . . զըաժակըն
դառնաման . . վերջական : փ. 'ի ծոց՝ ընդ
եօթնաջան : կ. օրինակ յազգըս մարդկան :

Փ. Ցերկրէն հանցէ: Կ. քո գագաթան.. չի՛
պատեն ոչ՛ գազան.. քո աւգնական:
Կ և փ. Քեզ պաշարեալ.. քեզ որո_ Պ
գայթ՝ ան": փ. գաղտ թագուցեր, առցէ
զոտուք ընդ խոր": ե և փ. քանզի անդ
քեզ բա": փ. սիրով սրևըդ պա"..
լինին ջընջեալ:
Կ և փ. Լեցին մորողք և տատանեալ: պժ
փ. հատուցէք ինձ չարչարեալ: կ. ձեզ
բազմացեալ, արդ մի՛ գտցի: փ. կամ որդ_
ւոց ձեր՝ ոք ող".. գործ անիծից: կ.
ելցէ՝ կարճ 'ի յաւեր: փ. ելցէ գետեր:
Կ. Սողոմացւոց՝ հուր ծըծըմբաբեր: պի
փ. խիստ և արագ՝ սրտիւ: կ. յարեան վը_
տակքն: փ. և քոյին տոհմի թուրքեր..
սատակեսջիք.. զամաղեկայ չար":
Կ. Յեսուայ յերկրէն.. տարագրեալ պլ
աւտարաբեր.. յոյժ 'ի հասակըդ.. որդի
դաւթեայ ծն"... երեք քարեան առանձ_
նաբեր.. զգէնդ՝ զօր ուսուցեր:
Կ և փ. Հատցէ զգլուխըդ քո սուսեր: պխ
փ. խօսեցեր.. որ 'ի դժոխս իջցես.. յան_
կողին.. ըզքեզ յազդեր: կ. ըզմակաբ_
եանք չար".. չարեացն ամեն:
Ե. Եւ առաւել զերա": փ. ընդ ա_պծ
րեան՝ խառնակեցեր: կ. արդ 'ի յիս ոչ՝
խընայեցեր: փ. ո՛չ նայեսցի ողորմա": կ.
մերձ 'ի յաւեր.. որ զանձեցեր: փ. յօր կո_
րըստեան... տ̃րն 'ի վերայ:
Կ. Մինչև տացէ բազմապա".. փոքր պկ

ինչ աւեր : փ. զոր հուպ եղ"․․ աւհաբեր․․․
իբր առընթեր : կ. քո մահմճառին :

պհ Փ. Խաւնիք զուք : կ. և տարտարոսըն :
փ. զոյն կրպեռ․․ անպարապ էր :

պձ Կ. Դուլթի սուրբ երգ : փ. չէք ինչ
մեռեալք․․ պըսակեալք :

պղ Կ. Ջեռըս լինիք : փ. 'ի յանմարմնոց
դա" : կ. դասքըն կար" : փ. և հողեղէն․․
որոց չէն" : կ. այն որ կապեաց` կամար զեր_
կինք․․ վաստակեցէք․․ սերմանեցէք․․
'ի զարունն` հոգւով ծաղկիք : փ. պարա_
րեսջիք : կ. բուսանիցիք :

Ջ. Փ. Սաղարթաբեր պաճու" : կ և փ.
ծառն կենաց մեր" : փ. 'ի մահուանէ այլ
ոչ․․ արձակէք : կ. զուարճալից : փ. աշ
խատեցեալք` իբրև․․ կենաց արբիք․․
սրտիւ բերկրիք :

ջժ Փ. Նոցին կաթիկ. նուքա բերան բելմ"․․
զոգն` աբրահամու․․ զպարտըն մեր"․․․
ըզկաթըն մածազին :

ջի Փ. Թագ 'ի գըլուխ` պսա"․․ զայն նե_
ղուն : ե. անդ յիշեցէք : փ. ինքնակամ
ձերով հաճիք : կ. արք ընդ արեանց` սըր_
բոց․․ կանայք 'ի դաս : փ. թագիւ պըճ_
նեալ․․ զարդարեալ․․ դասըս ցնծայք :

ջլ Կ. Ընդ անմարմնոց` ըն դաս ցըն"․․ նո_
րին լինիք․․ դասս հաւա" : կ և փ. լեցին`
յոյժ մխի" : փ. և թէ 'ի սոյն այն մա"․․
առ իս է յու" : կ. այլուստ էք բա" :

ջխ Կ և փ. սուգըդ լու" : փ. զըզգեստըն

ոխլա″ : կ · սուէք վըճ՛ար·· ասէք յանձին :
փ · ախտ մահա·րար : կ · որ բժշկէ զմեզ սի_
րաբար :

Փ · Ո՛չ բարկանայ՝ մեզ նա իսպառ : կ · ՂԾ
ածէ զըժար : փ · և զընթացիւք արե″ :

Փ · Ո՛չ թէ խմոյն՝ միոյն զփլպակ · զոր ՂԿ
ինձ հատոյց խիստ ձախո″ : զերիչ իմ · ·
զընտան : կ · իբրև զծովու · · ծըփանաց՝
ուզին գունակ · · ընուն զաւրէն՝ երկ″ : փ ·
զձիւն արասքատակ :

Կ · Ազգ հ՛աւասար : փ · առնեն աւար՝ ՂՀ
և ասպա″ : կ · զքարէլ առնեն խիստ աւե՛ :
փ · զմաքայն քակեն : կ · զդեան որ հալա_
ծէր , անդ առա″ · տ՛րն համարձակ : փ ·
զքարին զըլեն : կ · ըզհետ մտեն՝ նոցա :
փ · զոչէ յարագ, փախչին երէք առհասա_
րակ · · ՚ի սուսեր ՚ի տէգ՝ և ՚ի նիզակ :

Փ · Եւ զայլն առնեն : կ · մինչ յայն՝ ՂՁ
կոյս անընակ · · զծառայս և զաղ″ : փ · եր_
կիր ծաւաց : կ · ամեն աղքաց · · էին չա_
րեաց : փ · ուր հալածած՝ են և : կ · լինի
աշխարհ՝ քրիս″ · յանչափ յանբաւ՝ բա_
րեաց լըցած :

Կ · Վայ ասեն՝ վայ մեռելոց : փ · ՚ի զա_ ՂՂ
ւառըս հ՛ե″ · և ՚ի յաշխարհ · · և ամբառ_
նամ · · ես ցընծացած · · · մերկացած · ·
զոյն զգեցած :

Ե · Ոստայնանկաց : կ · փորանկեալ : Ռ
փ · և զառագաստնին նկարած : կ և փ ·
պարզեմ : կ · խորհրդազգած : փ · մակաղեք

հաւտ քո խաշանց, և դասք անմեղք մբ գաւառաց :

ճժ Փ. Առաքելոց մար″ .. սրբոց բանից վար″ .. ձայնիւ երգէք ընդ .. այլ ասացէք յուսով կն″ . զի փառք նախնոյն մբ տա″ : Ի. քան զվերջինն լինի յառաջ : Փ. լինի առատ : Կ. և տայ անցեալ անդր : Փ. 'ի մբ տառաց .. սպասեմ՝ այսըր :

ճի Փ. Եւ առ ապար՝ կատա″ .. նշանս 'ի գրոց .. թէ չէ գալոց .. զայս տուեալ : Կ. ոչ հողեղէն տեսեալ աչաց : Փ. տե_սեալ էաց : Կ. ոչ թէ 'ի միտ ... էք ընդ նմին ժամուն″ :

ճլ Փ. Անդր ցնծայք : Կ. էք մտանելոց : Փ. զլուկ հոմանուն : Կ. ներսէս բաց″ : Ե. և զշառաւիղ : Փ. բանիս գրոց : Կ. 'ի սփոփանս ողորմելոց : Փ. առ 'ի սփոփանք տրտմեցելոց :

ճխ Փ. Մեզ և բոլոր : Ե. քանի բանիւ : Կ. վասն սոցունց .. այլ ախմարաց : Փ. մանուկ տղայոց տիազորով : Կ և Փ. յաջող՝ զենուց ձիոց : Փ. զոր արարաքս՝ խրա_խանելոց :

ճծ Փ. Օր վայելեաց՝ բարի սոցունց :



# ԱՌԵՂԾՈՒԱԾՔ ԻՆՁ·

'Ի վերագրելոցն սբյն Ներսէսի Շնորհալւոյ:

## ԵՐԿԻՆՔ:

Եկեղեցին՝ բարձր էր և լայն,
անհուն շինուած՝ էր ւանգերան,
Կանթեղքն 'ի կախ՝ կան անչուան,
Ջահերն անձէթ՝ ըզլոյսըն տան:

## ԱՐԵԳԱԿՆ:

Նա բարձրանայ՝ յայրքէն 'ի քէն,
և խոնարհի՝ դարձեալ անդրէն,
Ամէն գըրի՝ հինգ աւր յիւրմէն,
գընայ ըզվէց՝ ամիսն ամէն:

## ԱՐԵՒ:

Տեսի զմանուկ՝ որ ծընանէր,
ւ'ի նոյն աւուր՝ ըն մեռանէր,
Յետ թաղելոյն՝ դարձեալ յառնէր,
ւայլ գեղեցիկ՝ զինք ցուցանէր:

## ԼՈՒՍԻՆ:

Կայր նըկանակ՝ մի գեղապանծ,
յաշխարհաշէն՝ փըռւան եփած,

'Ի յեփողէն՝ իւրմէ խոռուած ,
և 'ի նմանէ՝ դարձեալ լըցած :

## ԱՍՏԵՂՔ :

Օառ 'ի վերոյ՝ ջուրըն մեկնած ,
ներքոյ ամուր՝ աւդով փակած ,
Աւազն ամեն՝ հըրով լըցած ,
մի քան ըղմի՝ պայծառացած :

## ԱՇԽԱՐՀ :

Պանդոկ մի կայր՝ վերայերկրի ,
'ի յանցաւոր՝ ճանապարհի ,
Յոր անծանաւթք՝ 'ի նա գային ,
և իւր ծանաւթ՝քըն գընային ·
Մինչ հիւրըն գայր՝ մեծարէին ,
և մինչ գընայր՝ կողոպտէին ·
Ո՛չ թէ մասն ինչ՝ իրս առնուին ,
այլ զքովանդակ՝ըն խըլէին :

## ԳԵՏ :

Աւձ մի ըստուար՝ գունով կապոյտ ,
գալարելով՝ առնու պըտոյտ ,
Յիւր փորըն կայ՝ այն բարւոյն գիւտ ,
որ 'ի ցամաք՝ մեռնի նա շոյտ :

## ԾՈՎ :

Կաղմարն անթուրծ՝ է 'ի կաւոյ ,
թանաքն 'ի ներքս՝ առանց գունոյ ,
Գըրիչն անշունչ՝ է կենդանւոյ ,
առնու գըրէ՝ վերայ հողոյ :

## ԱՆՁՐԵՒ:

Նա 'ի ծովէն՝ վերակայի,
ամփոփելով՝ իբր 'ի տըկի.
Քաղցրիկ մաղէ՝ ուր տեղ պիտի,
երբ աստուծոյ՝ կամքըն չափի:

## ՁԻՒՆ:

'Ի յեղանելըն՝ է փըրփըրակ,
երբեմն լինի՝ փոշետեսակ.
Նա դիզանայ՝ որպէս բամբակ,
երկրի սերմանց՝ է աւժանդակ:

## ՑՈՐԵԱՆ:

Մեռանիմ՝ ւանմահանամ,
դարձեալ յառնեմ՝ կենդանանամ,
Օ աչս 'ի յերկրին՝ըս ամբառնամ,
բազմաստեղաւք՝ըն զաւրանամ:

## ԽԱՂՈՂ:

Օ արմանք ասեմ՝ քեզ սիրելի,
կին մի ծընաւ՝ գըռուզ որդի.
Տըղայն ունէր՝ ալիք ծերի,
երբ ծերանայ՝ դառնայ սեւի:

## ՄԵՂՈՒ:

Երէց քարկոփ՝ և իմաստուն,
յիւլթոյ ծաղկանց՝ շինէ իւր տուն.
Քաղցըր բղխէ՝ նորա լեզուն,
բընաւ չանկնի՝ իւր աչքըն 'ի քուն:

